Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8 (15)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1937

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 8 (15)



ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—Հկ. Հայաստան
ՅԵՐԵՎԱՆ — 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ՏՈՆ— ՄԱՅԻՍԻ 1-Ի 48-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ




Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Պատ· քարտուղար՝ Գ· ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Սրբ·՝ Մ· Սուրյան և Մ· Գևորգյան
Հրատարակություն № 11, պատվեր № 609
Գլավլիտի լիազոր Շ—1248
Տիրաժ 10·000

Պետհրատի տպարան, Յերևան


# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ՏՈՆ— ՄԱՅԻՍԻ 1-Ի 48-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## Ի՞ՆՉՈՎ Է ԴԻՄԱՎՈՐՈՒՄ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՅԵՐԿԻՐԸ 1937 Թ. ՄԱՅԻՍԻ 1-Ը

### ՍՍՀՄ-Ի ԻՆԴՈՒՍՏՐԱՑՄԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Մեր հայրենիքը—ՍՍՀՄ-ն աշխարհիս խոշորագույն արդյունաբերական յերկրներից մեկն է։ Իր արտադրած արտադրանքի ծավալով մեր հայրենիքը ներկայումս առաջին տեղն է գրավում Յեվրոպայում և յերկրորդ տեղն աշխարհում, զիջելով միայն ամենախոշոր կապիտալիստական պետությանը՝ ԱՄՆ-ին։

1933 թվականին ԽՍՀՄ-ում վերամշակող արդյունաբերությունն ուներ 330 հազար ձեռնարկություն (առանց փայտամթերման, փայտեղենի փոխադրման և ձկնարդյունաբերության, ինչպես և հանածո ճյուղերի ձեռնարկությունների): Բավական է, յեթե առնենք, վոր ԱՄՆ-ում 1929 թվականին հաշվվում եր 211 հազար այդպիսի ձեռնարկություն (առանց ելեկտրակայանների), վորպեսզի պարզ լինի, թե վորքան հարուստ ենք մենք արդյունաբերական ձեռնարկություններով: Հարկավ, սրա մեջ են մտնում մեծ թվով մանր ձեռնարկություններ մի քանի բանվորներով և փոքրածավալ արտադրանքով: Սակայն սխալ կլիներ ընդունել, թե մեր արդյունաբերության դեմքը վորոշվում է հատկապես այդպիսի մանր ձեռնարկություններով:

ԽՍՀ Միությունը հանդիսանում է ամենակենտրոնացված արդյունաբերության յերկիր: ԽՍՀՄ-ում վերամշակող արդյունաբերության մոտ 20 հազար ձեռնարկություն ունի ավելի քան 50-ական բանվոր, այսինքն մի քիչ պակաս, քան ունի Գերմանիան (29 հազար 1933 թվականին) և ԱՄՆ-ում (29 հազար 1929 թվականին):

Հիմնականում հենց այդ ձեռնարկություններում է կենտրոնացված մեզ մոտ բանվոր դասակարգը՝ 1933 թվականին վերամշակող արդյունաբերության մեջ աշխատող 5,9 միլիոն բանվորից 4,9 միլիոնն աշխատում եր հատկապես այդ խոշոր ձեռնարկություններում: ԽՍՀՄ-ում այդպիսի ձեռնարկություններում կենտրոնացված եր բոլոր բանվորների 83,5 տոկոսը, իսկ ԱՄՆ-ում՝ 80,9 տոկոսը, Գերմանիայում ավելի ևս պակաս:

Ինչ վերաբերում է հազարական հոգուց վոչ պակաս բանվոր ունեցող արդյունաբերական հսկաներին, ապա մեզ մոտ 1933 թվականին կար 1135 այդպիսի ձեռնարկություն, (ԱՄՆ-ում 1156): Նրանց մեջ կենտրոնացված եր բոլոր բանվորների 42,6 տոկոսը, (ԱՄՆ-ում բոլոր բանվորների ու ծառայողների մոտ մի քառորդը):

Մեր ամբողջ արդյունաբերության մեջ աշխատում է մոտ 10 միլիոն բանվոր ու ծառայող (չհաշված կառուցող բանվորներին, վորոնք 1937 թվականին կազմելու յեն մոտ 1750 հազ. հոգի), դրանցից մոտ 8 միլիոնը խոշոր արդյունաբերության մեջ:

Մեր արդյունաբերությունն աճում է

վորևէ այլ յերկրի արդյունաբերության պատմության մեջ դեռ չտեսնված տեմպով: Առաջին հնգամյակի տարիներին (1929–1932) արդյունաբերական արտադրանքը տարեց-տարի ավելանում եր միջին հաշվով տարեկան 23,3 տոկոսով, իսկ յերկրորդ հնգամյակի տարիներին (1933–1936) տարեկան 20 տոկոսով, ընդվորում 1936 թվականին, ստախանովական շարժման հզոր զարգացման շնորհիվ, արդյունաբերության արտադրանքն աճեց 31,1 տոկոսով:

1937 թվականին արդյունաբերական արտադրանքի արժեքը հասնում է առնվազն 103 միլիարդ ռուբլու (1926–1927 թվականի անփոփոխ գներով): Այդ նշանակում է, վոր մեր արդյունաբերությունն արտադրելու յե որական ավելի քան 300 միլիոն ռուբլու արտադրանք (1926–1927 տարվա գներով):

Միջին հաշվով որական վորքա՞ն իրեր ու արտադրանք է տալու մեր արդյունաբերությունը 1937 թվականին:

1937 թվականին մեր ելեկտրակայաններում արտադրվելու յե որական ավելի քան 110 միլիոն կիլովատ-ժամ ելեկտրոեներգիա, այսինքն այնքան, վորքան կպահանջեր մոտ 100 միլիոն հիսունական վատանոց լամպ՝ 24 ժամ անընդհատ վառվելիս:



Մեր հանքահորերում որական հանվելու յեն ավելի քան 400 հազար տոնն ածուխ կամ 16,5 տոնն (հազար փութ) տանող մոտ 25 հազար վագոն.

մեր նավթահանքերում ստացվելու յեն մոտ 100 հազար տոնն նավթ.

կոքս պատրաստող սարքերում արտադրվելու յեն ավելի քան 60 հազար տոնն կոքս.

հալոցներում հալվելու յեն 44 հազար տոնն թուջ.

մարտենյան և այլ հնոցներում ձուլվելու յեն ավելի քան 55 հազար տոնն պողպատ.

յերկաթ մամլող դազգյահների վրա մամլվելու յեն 43-ական հազ. տոնն մետաղ.

արտադրվելու յեն 400-ական տոնն պղինձ.

մոտ 140 տոնն ալյումինիում.

112 դազգյահ.

415 տրակտորաքարշ ձիու ուժ (?).

150 կոմբայն.

6 շոգեքարշ.

260 ապրանքատար վագոն (յերկառնի վագոնների հաշվով).

600 ավտոմեքենա.

216 տրակտոր․

136 հազար գնդակավոր սռնակալ․

1640 հեծանիվ․

1500 գրպանի ժամացույց․

840 լուսանկարչական ապարատ․

2750 պատեֆոն․

137 հազար պատեֆոնի պլաստինկա․

275 հազար ելեկտրոլամպ․

1800 լամպային ռադիո-ընդունիչ․

մոտ 7000 տոնն ֆոսֆատային պարարտանյութ, չհաշված 2400 տոնն ֆոսֆորիտային ալյուրը․

5200 տոնն կալիումի պարարտանյութ (սիլվինիտ)․

6600 տոնն ապատիտային հանք․

ավելի քան 250 տոնն սինթետիկ կաուչուկ․

8800 ավտոշին և նույնքան կամերա․

275 հազար զույգ ռետինե վոտնաման․

2600 տոնն թուղթ․

մեր անտառներում պատրաստվելու յեն մոտ 750 հազար խորանարդ մետր փայտանյութ (իրականում շատ ավելի՝ փայտամթերման սեզոնայնության պատճառով)․

արտադրվելու յեն 11 միլիոն մետր բամբակեղեն գործվածք։ Այդպիսի քանակու-



թյամբ կտորեղենով կարելի յե գոտի կապել ամբողջ Խորհրդային Միության վրա՝ Մինսկից մինչև Կամչատկա․

մոտ 300 հազար մետր բրդեղեն գործվածքներ․

մի միլիոն մետրից ավելի վուշի գործվածք․

160 հազար մետր մետաքսեղեն․

ավելի քան 1,3 միլիոն զույգ գուլպա և նասկի․

ավելի քան կես միլիոն զույգ վոտնաման (բացի ռետինե վոտնամաններից ու վալենկաներից)․

մեր ջրերում ստացվելու յեն մոտ 50 հազար ցենտներ ձուկ (իրականում՝ ավելի շատ, յեթե նկատի առնենք, վոր ձկնորսությունը սեզոնային բնույթ ե կրում)․

հացի գործարաններում և խոշոր փռերում թխվելու յեն 47-ական հազար տոնն հաց․

շաքարի գործարաններում արտադրվելու յեն ավելի քան 7 հազար տոնն շաքարավազ (իրականում առնվազն կրկնապատիկ ավելի՝ շաքար պատրաստելու գործի սեզոնայնության պատճառով)։

ավելի քան 1,3 հազար տոնն ոճառ․

մոտ 4 միլիոն տուփ կոնսերվ․

մոտ 3000 տոնն հրուշակեղեն.

280 միլիոն գլանակ և տասնյակ հազարավոր այլ իրեր:

Այս է Խորհրդային Միության արդյունաբերության 24 ժամվա արտադրանքը:

Այդ հսկայական քանակությամբ իրերն արտադրվում են Միության հազարավոր ձեռնարկություններում, վորոնց մեծ մասը կամ նոր է կառուցվել կամ ամբողջովին վերակառուցվել է խորհրդային իշխանության ձեռքով:

Նոր կառուցված ձեռնարկությունները՝ համաշխարհային ինդուստրիայի հսկաները, կանգնած են աշխարհիս ամենախոշոր, ամենահզոր ձեռնարկությունների շարքում:

Ահա թե ինչ են ներկայացնում նրանք՝

## ՀԻԴՐՈԿԱՅԱՆՆԵՐ

Դնեպրոգեսը— աշխարհիս մեծագույն հիդրոկայաններից մեկն է: Կառուցված է Դնեպրի վրա, մի քիչ ցածր այն սահանքներից, վորոնք անցյալում կտրում եյին Ուկրաինայի ամենամեծ գետի ճանապարհը և խանգարում եյին ծայրից ծայր նավարկությունը գետի ակունքներից մինչև գետաբերանը: ԳՈԵԼՌՈ-ի պլանով, ծրագրված եր այդտեղ կառուցել 200 հազար կիլովատ կարողությամբ հիդրոկայան: Կառուցված Դնեպրոգեսի կարողությունը համարյա յեռապատիկ ավելի յե՝ 560 հազար կիլովատ, վոր կազմում է ցարական Ռուսաստանի բոլոր հիդրոելեկտրակայանների կարողության կեսից ավելին: Արդեն 1936 չորրորդ տարում, յերբ ջեղումների պատասխանության պատճառով կայանը չաշխատավ այնպիսի քանակությամբ հիդրոեներգիա, վորը կարող եր նա վերամշակել ելեկտրոեներգիայի, և յերբ դեռ չեյին մոնտաժվել նախադծված 9 ագրեգատներից յերկուսը, Դնեպրոգեսը տվեց 2100 միլիոն կիլովատ ժամ ելեկտրոեներգիա՝ 155 միլիոն կիլովատ-ժամ ավելի քան ամբողջ ցարական Ռուսաստանում: Դնեպրոգեսի շնորհիվ հնարավոր դարձավ կայանի շրջանում զարգացնել այնպիսի կարեվոր եներգոընկալ արտադրություններ, ինչպիսին է ալյումինիումի, ֆերրոձուլվածքների և այլ հանքերի արտադրությունը: Դնեպրոգեսը, բացի դրանից, եներգիա յե մատակարարում գյուղատնտեսական մի մեծ շրջանի:

1937 թվականում Դնեպրոգեսը հաղորդման գծով միանալու յե Դոնբասին, վորը հնարավորություն կտա գետի հորդացման շրջանում Դնեպրի եներգիայի ավելորդ մասը փոխադրել Դոնբաս և Դոնբասից եներգիա ստանալ Դնեպրում, ջուրը պակասած ժամանակաշրջանում: Դնեպրոգեսը 1937 թվականին տալու յե ավելի քան 2,5 միլիարդ կիլովատ–ժամ ելեկտրոեներգիա:

Վոլխովյան ելեկտրակայանը, վորի կառուցմանը ձեռնարկված եր Վոլխովա գետի վրա (Լենինգրադի մոտ) դեռ Լենինի ժամանակ: Ծրագրված 30 հազար կիլովատ կարողության փոխարեն, կայանին տրվեց 66 հազար կիլովատ կարողություն: Սվիրի հետ միասին, նա եժան ելեկտրոեներգիա յե մատակարարում Լենինգրադի արդյունաբերությանն ու կոմունալ տնտեսությանը, աշխատելով Լենինգրադի ելեկտրոկայանների ընդհանուր սիստեմում:

Սվիրի ելեկտրակայանը, վորը գործարկվեց վերջերս, առաջինն ե այն յերկու հիդրոկայաններից, վորոնց կառուցումը ծրագրված ե Սվիր գետի վրա: Մինչև այժմ կայանին հաղորդված կարողությունը կազմում ե 100 հազար կիլովատ: Սվիրի յերկ-



րորդ կայանի կարողությունը կազմելու յե 144 հազար կիլովատ: ԳՈԵԼՌՈ–ի պլանով, յերկու կայանների ընդհանուր կարողությունը 100 հազար կիլովատից ավելի չպետք ե լիներ: Կայանն օգտագործում ե Սվիր գետի ջրի անկման այն ուժը, վորը ստացվում ե Օնեգա լճի (վորից բղխում ե Սվիրը) և Լադոգա լճի մակարդակի (վորտեղ թափվում ե նա) մակարդակների տարբերությունից:

Ներկայումս ավարտված և շահագործման ե հանձնվում աշխարհիս ամենահյուսիսային կայանը՝ Տուլոմայի հիդրոկայանը, Տուլոմա գետի վրա, Մուրմանսկ քաղաքից 26 կիլոմետր հեռավորությամբ, այսինքն՝ բևեռային գոտուց այն կողմը: Տուլոմայի հիդրոկայանը, վորը կառուցված ե Ներքգործժողկոմատի օրգանների կողմից, այդպիսի կառուցվածքի համար ամենակարճ ժամանակամիջոցում, ելեկտրահոսանք ե մատակարարելու Մուրմանի արդյունաբերական շրջանին և նպաստելու յե նրա հետագա տնտեսական ծաղկմանը:

Նույն Կոլայի թերակղզում աշխատում ե Նիվայի հիդրոկայանը Նիվա գետի վրա: Նրա կարողությունը՝ 30 հազար կիլովատ,

1937 թվականին կրկնապատկվելու յե: Կայանը էլեկտրոէներգիայով սպասարկում է Կիրովյան ապատիտային կոմբինատը:

1937 թվականին գործարկվեց Բաքսանի հիդրոկայանը Կաբարդինո-Բալկարիայում: Բաքսան գետի կիրճում կառուցվեց վոչ բարձր պատնեշ: Այդտեղից 9 կիլոմետրանոց ջրանցքով, վորի մի մասը (3280 մետր) անցնում է ներքնուղով, ջուրը հասնում է ձորում գտնվող հիդրոկայանին: Հիդրոկայանի բազմաթիվ կառուցվածքները (պատնեշը, ջրանցքը, ներքնուղին, յերեք ավվեռուկը, խողովակաշարը և այլն) տեխնիկական բացառիկ հետաքրքրություն են ներկայացնում: Այդ կայանի գործարկմամբ (25 հազար կիլովատ կարողությամբ) աշխատանք է ծավալում մի հսկայական մոլի կոմբինատ՝ վոլֆրամի սառցատնով, էլեկտրիֆիկացիայի յե յենթարկվում յերկաթուղու Մինեռալնիյե Վոդի գծամասը, կերպարանափոխվում է Կաբարդինո-Բալկարիայի մայրաքաղաք Նալչիկը: Էլեկտրական լույսով են հեղեղվում չքանչանալիր հանրապետության ավանները, ինչպես և Կիսլովոդսկի խմբակի բուժավայրերը և այլն:



ԶԱԳԵՍ-ը Վրաստանի մայրաքաղաք Թբիլիսիի մոտ կառուցված մի հիդրոկայան է 25 հազար կիլովատ կարողությամբ (1937 թվականին ավելացվելու յե 12 հազար կիլովատ ևս), սպասարկում է Թբիլիսիի արդյունաբերական շրջանը:

ՌԻՈՆԳԵՍ-ը ներկայումս Կովկասի ամենախոշոր հիդրոկայանն է 50 հազար կիլովատ կարողությամբ, գտնվում է Ռիոն գետի վրա, Քութայիսիի մոտ:

Քանաքեռի հիդրոկայանը Հայաստանում- 1936 թվականին գործարկվեցին առաջին յերկու ագրեգատները 21 հազար կիլովատ կարողությամբ: 1937 թվականին նրա կարողությունը հասցվելու յե 65 հազար կիլովատի, իսկ հետագայում՝ 88 հազար կիլովատի: Առաջինն է այն կայանների խմբից, վորոնք կառուցվելու յեն 2000 մետր բարձրության վրա գտնվող Հայոնի Սեվանա լճից բղխող Զանգի գետի վրա: Այդ կայանները կոչված են ոգտագործելու այն էներգիան, վորը կարելի յե ստանալ այդպիսի զգալի բարձրության վրա գտնվող հսկայական ջրային ավազանից:

## ՎԱՌԵԼԱՆՅՈՒԹՈՎ ԱՇԽԱՏՈՂ ԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆՆԵՐ

Ստալինոգորսկի էլեկտրակայանը— Հաղորդման գծով կապված է Մոսկվայի հետ, ուստի և աշխատում է ոչ միայն Ստալինոգորսկի քիմիական կոմբինատի կարիքների համար, այլև էներգիա յէ մատակարարում Մոսկվային: Ներկայումս նրա կարողությունը կազմում է 200 հազար կիլովատ: 1937 թվականին այդ կայանում դրվելու յէ ԽՍՀՄ-ի առաջին յերկու 100 հազար կիլովատ կարողություն ունեցող տուրբոգեներատորներից մեկը: Ներկայումս Միության մեջ վառելանյութով աշխատող կայաններում գործող ագրեգատներից խոշորագույնն է 50 հազար կիլովատանոցը, իսկ հիդրոկայաններում (Դնեպրոգեսում) գործող ագրեգատներից՝ 62 հազար կիլովատանոցը: Բացի դրանից, 1937 թվականին Ստալինոգորսկի կայանում դրվելու յէ 50 հազար կիլովատանոց տուրբոգեներատոր: Այդպիսով, Ստալինոգորսկի կայանը, Զույեվկայի կայանի հետ միասին դառնալու յէ ԽՍՀՄ-ի վառելանյութով աշխատող ամենախոշոր կայանը:



Զույեվկայի էլեկտրակայանը— գտնվում է Դոնբասի կենտրոնում: Շտերովկայի կայանի, մի քանի արդյունաբերական կայանների ու մի շարք այլ մանր կայանների հետ միասին, սպասարկում է ԽՍՀՄ-ի կարևորագույն ածխա-մետաղաձուլական շրջանը: Ունենալով 250 հազար կիլովատ կարողություն, Զույեվկան ներկայումս հանդիսանում է Միության վառելանյութով աշխատող ամենահզոր կայանը: Նրանում, ինչպես և Ստալինոգորսկի կայանում, 1937 թվականին դրվելու յէ 100 հազար կիլովատ կարողությամբ տուրբոգեներատոր:

Գորկու էլեկտրակայանը— տորֆով աշխատող ամենամեծ կայանը (204 հազար կիլովատ կարողությամբ) գտնվում է Գորկու քաղաքի մոտ և էլեկտրոէներգիա յէ մատակարարում Գորկու արդյունաբերական հանգույցին:

Դուբրովկայի էլեկտրակայանը— Լենինգրադի հանգույցի ամենախոշոր էլեկտրակայանն է (150 հազար կիլովատ կարողությունը 1937 թվականին հասցվելու յէ 200 հազար կիլովատի): Կայանում աշխատող յերեք հատ 50 հազար ուժանոց ագրեգատներից մեկը, չհաշված 1937 թվականին

դըվելիք 4-րդ ագրեգատը, աշխատում է վառվող թերթաքարով, իսկ մյուս յերկուսը՝ տորֆով, վորով ոգտագործվում է տեղական վառելանյութը:

Մոսկվայի շրջանում այդպիսի կայաններ են Շատուրի ելեկտրակայանը, վորն աշխատում է տորֆով և Կաշիրի ելեկտրակայանը, վորն ինչպես և Ստալինոգորսկինը, աշխատում է Մոսկվայի շրջանի ածխով: Տեղական ածխով է աշխատում Ուրալի խոշորագույն ելեկտրակայանը Չելյաբինսկում և մի շարք այլ ելեկտրակայաններ: Միության բոլոր խոշոր ելեկտրակայանները, ընդհանուր առմամբ, աշխատում են տեղական վառելանյութով և կառուցվում են այդ վառելանյութը գտնված վայրում: Ելեկտրոեներգիան մեծ տարածության վրա հաղորդելու հնարավորությունը այդպիսով թույլ է տալիս ազատել մեր տրանսպորտը վառելանյութի զգալի փոխադրումներից, վորոնք անխուսափելի կլինեյին, յեթե կայանները կառուցվեյին աչքի առաջ ունենալով բերովի վառելանյութը:

Մեզ մոտ ելեկտրոեներգիայի արտադրությունը կենտրոնացված է 12 հազար ելեկտրակայաններում: Մեզ մոտ ելեկտրակա-



յաններ ունեն շատ շրջգործկոմներ, գյուղեր, մեքենա-տրակտորային կայաններ, խորհտնտեսություններ, արդյունաբերական առանձին ձեռնարկություններ, կոմունալ տնտեսությունը, տրանսպորտը, շինարարությունները, կոոպերատիվ ու կուլտուրական շատ հիմնարկներ և այլն: Ելեկտրական լամպը վառվում է ձմեռողների մոտ, Դիքսոն կղզում, Ռուդոլֆի կղզում (Ֆրանց Հովսեփի յերկիրը), Չուկոտկայում և լեռնային Բալաչխանի ղշլաղներում, Սիբիրի փայտահատման վայրերում, հարավային Ուկրաինայի կոլտնտեսություններում: Հարկավ, եներգիայի մեծագույն մասը արտադրում են ամենախոշոր կայանները, վորոնք ամենից ավելի ձեռնտու յեն, մսխում են քիչ վառելանյութ, պահանջում են համեմատաբար սակավաթիվ անձնակազմ, ուստի և այդտեղ եներգիայի ինքնարժեքն ամենացածրն է: Այդ կայանները հաղորդման գծերով միացած են նրանցից հաճախ 100-200 կիլոմետր և ավելի հեռու գտնվող սպառողների հետ: Հաղորդման առանձին գծեր աստիճանաբար միանում են իրար հետ, վորի շնորհիվ ստեղծվում են միասնական ցանցեր հսկայական տարածու-

թյան վրա: Այդպես, Ուրալում գոյություն ունի միասնական բարձրավոլտ ցանց՝ Սոլիկամսկից (հյուսիսում) մինչև Չելյաբինսկ (հարավում), վորն ընթացիկ տարում հասցվելու յե մինչև Մագնիտոգորսկ և կազմում ե մոտ 1000 կիլոմետր յերկարություն: Մոտ ապագայում հաղորդման այդպիսի գծերով միանալու յեն Միության բոլոր կարեվորագույն արդյունաբերական շրջանները: Ներկայումս տեխնիկապես լուծելի այն գաղափարը, վորը զուր են յերազում իրականացնել տեխնիկական լավագույն մտքերը կապիտալիստական Եվրոպայում,—իրագործվում ե սոցիալիզմի յերկրում:

Թե վորքան նշանակալից են Միության խոշորագույն կայանները, կարելի յե տեսնել նրանից, վոր ավելի քան հարյուր հազարական կիլովատ կարողություն ունեցող 16 ելեկտրակայան 1937 թվականին տալու յեն 16,8 միլիարդ կիլովատ-ժամ եներգիա՝ Միության մեջ ստացվելիք 40,5 միլիարդ կիլովատ-ժամ եներգիայից, կամ ամբողջ Միության մեջ ստացվող ելեկտրոեներգիայի ավելի քան 40 տոկոսը: 120 այսպես կոչված շրջանային կայաններ, այ-



սինքն բոլոր ելեկտրակայանների մոտ մի տոկոսը, յերկրին տալիս ե ամբողջ ելեկտրոեներգիայի 75 տոկոսը:

## ԱԾԽԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆ

Ածխի հանույթը ԽՍՀՄ-ում 1937 թվականին 150 միլիոն տոննից ավելի յե լինելու: Ինչպես և այլ ճյուղերում, ածխի հանույթի մեծ մասը կենտրոնացված ե խոշոր հանքահորերում: Ամենափոքր հանքահորերը («ինքնայեռները») վերացվեցին դեռ խորհրդային իշխանության առաջին տարիներին: Դոնբասում 1925 թվականին, հեղափոխությունից առաջ գոյություն ունեցող 1200 հանքահորերից, առանձնացվեց 238 հանքահոր, վորտեղ և կենտրոնացվեց ամբողջ հանույթը: 1934 թվականին ամբողջ Միության մեջ աշխատում եր 502 հանքահոր, վորոնցից յուրաքանչյուրը տալիս եր ավելի քան 20 հազար տոնն ածուխ: Այդ հանքահորերն արտադրում եյին ամբողջ ածխի 95,5 տոկոսը, ընդվորում 155 ամենախոշոր հանքահորերում կենտրոնացված եր Միության ամբողջ ածխի հանույթի յերկու յերրորդ մասը:

Այդ բոլոր խոշորագույն հանքահորերը կառուցվել են առաջին և յերկրորդ հնգամյակի տարիներին: Միմիայն առաջին հնգամյակի տարիներին կառուցվեց ավելի քան 100 խոշոր հանքահոր, իսկ մի քանի տասնյակ հին հանքահորեր ամբողջովին վերակառուցվեցին: Վոչ պակաս թափով շախտեր են կառուցվում նաև յերկրորդ հնգամյակում: Խորհրդային իշխանության տարիներին, մինչև 1935 թվականը ներառյալ, կառուցվեց և հիմնադրվեց 325 հանքահոր՝ տարեկան 182 միլիոն տոնն հանույթի կարողությամբ, դրանցից 132 հանքահոր Դոնբասում (87 միլիոն տոնն կարողությամբ), 50 հանքահոր Կուզբասում (35 միլիոն տոնն կարողությամբ), 50-ից ավելի հանքահոր Ուրալում (մոտ 20 միլիոն տոնն կարողությամբ), 17 Կարականդայում (10650 հազար տոնն), 58 Մոսկվայի ավազանում (15 միլիոն տոնն) և այլն: Այդ հանքահորերից արդեն շահագործման է հանձնվել 246 հանքահոր՝ 98,7 միլիոն տոնն կարողությամբ:

Ածխի հանույթի խոշորագույն շրջան է հանդիսանում Դոնեցի ավազանը: 1937 թվականին նա տալու յե 88 միլիոն տոնն ա-



ծուխ, այսինքն ամբողջ հանույթի կեսից ավելի: Սիբիրում աճեց նոր խոշոր ավազան՝ Կուզնեցկի ավազանը: Նախահեղափոխական շրջանից մինչև այժմ այդտեղ հանույթն աճել է ավելի քան 25 անգամ: Կարականդայում (Ղազախստան) ածխի հանույթն սկսվեց 1931 թվականին, իսկ արդեն հինգ տարուց՝ 1936 թվականին, Կարականդան— Միության այդ յերրորդ ածխային բազան—տվեց 3,8 միլիոն տոնն ածուխ: Բոլոր արեվելյան ածխային ավազանները 1936 թվականին տվին 40 միլիոն տոնն՝ համամիութենական հանույթի համարյա մի յերրորդ մասը: Ախի հանույթի խոշոր ավազան դարձան Մոսկվայի ածխահանքերը, վորոնք 1936 թվականին 7,5 միլիոն տոնն ածուխ տվին յերկրին:

Վերջին տարիներս կառուցված բոլոր նոր հանքահորերը ներկայացնում են հսկայական մեքենայացված ձեռնարկություններ: Ածխի հանույթը մեքենայացվում է նաև հին խոշոր ձեռնարկություններում: Արդեն 1935 թվականին ածխի հանույթը Միության մեջ մեքենայացվել եր ավելի քան յերեք քառորդով, փոխադրումը՝ 80 տոկոսով, հորից մակերես հանելը՝ 40 տո-

կոսով։ Հանքահորերում աշխատում էր 2256 գայլիկոնող մեքենա (այդ թվում 1906 հատ ծանր) և 13500 ածխահատ մուրճ։

## ՍԵՎ ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱ

ԽՍՀՄ-ում մետաղաձուլական արտադրությունը կենտրոնացված է Ծանր Արդյունաբերության Ժողկոմատի 73 հատուկ մետաղաձուլական գործարաններում ու ավելի քան 75 մեքենաշինական գործարանների մետաղաձուլական ցեխերում, ինչպես և մյուս ժողկոմատների մի քանի մանր ձեռնարկություններում։ Ներկայումս ԽՍՀՄ-ում աշխատում է 120 հալոցք, մոտ 400 մարտենյան հնոց, ավելի քան 300 մետաղ մամլող դազգյահ, 190 էլեկտրահնոց և մի շարք այլ ագրեգատներ։

Մինչհեղափոխական շրջանում աշխատող մեծ թվով մանր հալոցներ մարտենյան և այլ ագրեգատներ ներկայումս կանգնեցվել են և նույնիսկ լուծարքի յեն յենթարկվել։ Մենք ներկայումս ունենալով ավելի քիչ հալոց, քան 1919 թվականին, արտադրում ենք համարյա քառապատիկ ավելի թուջ։

Առաջին և յերկրորդ հնգամյակների տարիներին գործարկվեց 60 հալոց՝ 36144 խորանարդ մետր օգտակար ծավալով, դրանցից ամբողջովին վերակառուցված 26 հալոց։ Գործարկվեց 162 մարտենյան հնոց՝ հատակի 5574 քառակուսի մետր տարածությամբ (դրանցից 134-ը նոր՝ հատակի 5079 քառակուսի մետր տարածությամբ), 79 մամլող դազգյահ, 19 խողովակի դազգյահ, 170 էլեկտրոհնոց և մի շարք այլ ագրեգատներ։

Վերջին տարիներս գործարկված հալոցների միջին ծավալը կազմում է 900–1000 խորանարդ մետր, մինչդեռ հեղափոխությունից առաջ միավորներ եյին կազմում 500 խորանարդ մետր ծավալ ունեցող հալոցները։ Այժմ գործարկվող մարտենյան հնոցների մեծ մասից յուրաքանչյուրի հատակն ունի ավելի քան 60 քառակուսի մետր տարածություն, մինչդեռ 1931 թվականին մարտենյան հնոցների հատակի միջին տարածությունը 20 քառակուսի մետրից քիչ ավելի յեր։ Վերջին ութը տարում գործարկվեց 7 խոշոր բլյումինգ, վորոնք մինչ այդ գոյություն չեն ունեցել մեր մետալուրգիայում։

1937 թվականին մեր մետալուրգիան տա-

լու յն 16012 հազար տոնն թուջ, 20150 հազար տոնն պողպատ և 15623 հազար տոնն մամլած մետաղ: Հիմնականում արտադրությունը կենտրոնացվում է խոշոր գործարաններում: Արդեն 1934 թվականին 52 գործարաններից 6-ը տվեց ձուլված ամբողջ թուջի կես մասը, 72 գործարաններից 11-ը տվին պողպատի ամբողջ ձուլվածքի ավելի քան 55 տոկոսը: Այդ բոլոր խոշորագույն գործարանները կառուցվել են խորհրդային իշխանության ժամանակ:

Ի՞նչ են ներկայացնում այդ աչքի ընկնող ձեռնարկությունները:

Մագնիտոգորսկի գործարանը խոշորագույն մետալուրգիկ գործարանն է Եվրոպայում և ամենախոշորներից մեկն աշխարհում: Արդեն այժմ, երբ գործարանի շինարարությունը դեռ ամբողջովին չի ավարտվել, գործարանում աշխատում է 4 հալոց՝ յուրաքանչյուրը 1180 խորանարդ մետր ծավալով, 12 մարտենյան հնոց՝ յուրաքանչյուրը 66 քառակուսի մետր տարածության հատակով, մի բլյումինգ և 6 այլ մամլող դազգյահ: 1936 թվականին այդ հսկան տվեց 1557 հազար տոնն թուջ,



1164 հազար տոնն պողպատ և 947 հազար տոնն մամլած մետաղ:

Այդ ամբողջ արտադրանքը բեռնելու համար անհրաժեշտ է ավելի քան 200 հազար վագոն: Այդ վագոններից ստացվող կազմը կբռներ Մագնիտոգորսկից մինչև Մոսկվա ընկած ամբողջ ճանապարհը: Մագնիտոգորսկի գործարանը կառուցված է Մագնիտնայա սարի վրա, նա առատ է հսկայական քանակությամբ հանքով, որ մինչ այդ չէր մշակվում: 1936 թվականին Մագնիտնայա սարում ստացվեց 5414 հազար տոնն յերկաթահանք: Դատարկ տեղում կառուցված Մագնիտոգորսկի գործարանը· Կուզնեցկի գործարանի հետ միասին· ներկայացնում է Ուրալո-Կուզնեցկի կոմբինատի կարեվորագույն մասը: Այդ կոմբինատը ստեղծելու դեմ մի ժամանակ հանդես եյին յեկել վնասարարները, տրոցկիստները, աջերը: Մագնիտոգորսկի շինարարության դեմ այն ժամանակ բերվող «ամենածանրակշիռ» առարկումներից մեկն եր այն պատճառաբանությունը, թե անխուսափելի յե իբրև թե Մագնիտոգորսկի թուջի բարձր ինքնարժեքը, որն արտադրելու համար կարիք կլի-

նի ոգտագործել հեռու տեղերից բերված վառելանյութ՝ Կուզնեցկի ածուխը, և այդ կապակցությամբ վնասաբեր կլինի գործարանի աշխատանքը: Կյանքը ծաղրեց այդ կռկռոցը: Արդեն 1936 թվականին, դեռ շինարարությունը կատարելապես չվերջացած «Մագնիտկայի» թուջն ամենաեժանը դուրս յեկավ Միության մեջ:

Խոշոր մեքենայացված արտադրության առավելությունները այդ փաստում յերևան յեկան ամենահամոզիչ ձևով:

Կուզնեցկի գործարանը Ուրալո-Կուզնեցկի կոմբինատի յերկրորդ խոշորագույն գործարանն ե: Նա կառուցված ե արևմտյան Սիբիրի Կուզնեցկի ածխի բազայի վրա: Մինչև Կուզնեցկի գործարանը կառուցվելը, Ուրալից մինչև Բայկալ ընկնող ամբողջ տարածության վրա գոյություն ուներ միայն մի մետաղաձուլական գործարան՝ Գուրյևի գործարանը: Նրա մեծության և տեխնիկական զինվածության մասին կարելի յե գաղափար կազմել այն չափազանց զուենղ պատմվածքից, վորը բերված ե «Մագնիտկան» կառուցող ընկեր Գուգելի հուշերում: Գուրյևի գործարանում շիխտը (այսինքն հանքը, կոքսը, կիրը և հալոցի



մեջ ածվող մնացած հումքը) հալոցի բերանն եր մատուցվում ձիու միջոցով, վորը բերում եր վագոնետը փայտե թեք տախտակամածի վրայով: Բանվորները բահերով նետում եյին շիխտը հնոցի մեջ, բաց անելով բերանի փականը: Գործարանում խոշորագույն պատահար եր համարվում այն դեպքը, յերբ «ձին պոչն այրել եր, իսկ ձին այնտեղ հասարակ ձի չե—պատմել ե Գուգելին Գուրյևի գործարանի հին բանվորը—վեց տարի յե աշխատել, ինքն եր դեպի վեր և հետ գնում լատ շչակի: Դրանից հետո յերկու շաբաթ այլ ձի եյին փնտրում ու վարժեցնում, բայց արդեն այդպիսի ձի չգտանք...»[1]): Այդպես եր Սիբիրի միակ հալոցն այն պահին, յերբ ձեռնարկվեց Կուզնեցկի գործարանի շինարարությունը: Այդ հալոցը տարեկան ձուլում եր այնքան թուջ, վորքան այժմ ձուլում ե Կուզնեցկի գործարանը 36 ժամում: Տայգայում, անմարդաբնակ տեղում, «Մագնիտկայի» հետ միաժամանակ, կա-

[1]) Գուգել:—Հիշողություններ «Մագնիտկայի» մասին: Ալմանախ 6: «Տասնութերորդ տարին», եջ 329:

 

ուցվում էր նաև Կուզնեցկը: Այժմ այդտեղ աշխատում է չորս խոշոր հալոց, վորոնցից յերկուսը՝ յուրաքանչյուրը 1163 խորանարդ մետր ծավալով, իսկ յերկուսը՝ 820-ական խորանարդ մետր ծավալով, 13 մարտենյան նույնպիսի հնոց, ինչպես և «Մագնիտկայում» մի բլյումինգ և յերեք այլ մամլող դազգյահ: Մոտ ժամանակներս, չորրորդ մամլող դազգյահի գործարկումով, ավարտվում է այդ հսկայի կառուցումը: 1936 թվականին Կուզնեցկի գործարանը տվեց 1364 հազար տոնն թուջ, 1255 հազար տոնն պողպատ և 859 հազար տոնն մամլած մետաղ:

Այդ յերկու հսկաների արտադրանքը 1936 թվականին կազմեց ցարական Ռուսաստանի բոլոր գործարաններում 1913 թվականին արտադրված ամբողջ թուջի յերկու յերրորդ մասը, պողպատի 60 տոկոսը և մամլած մետաղի կեսը:

Զապորոժստալը— վորակավոր մետաղ արտադրող խոշորագույն գործարաններից մեկն է: Նա կառուցված է Դնեպրոգեսի մոտ և օգտագործում է նրա էժան էլեկտրոէներգիան, վորը պահանջվում է մեծ



քանակությամբ՝ հատուկ էլեկտրահնոցներում վորակավոր պողպատ ստանալու համար, ինչպես և ֆերրոձուլվածքներ պատրաստելու համար: Դեռ չավարտված գործարանի նախագծային կարողությունը հաշված է 2 միլիոն տոնն թուջ, 2 միլիոն տոնն պողպատ և 1,5 միլիոն տոնն մամլած մետաղ: Ներկայումս արդեն աշխատում է յերկու հալոց, յուրաքանչյուրը 950 խորանարդ մետր ծավալով, վեց մարտենյան հրնոց, վորոնցից հինգը խոշոր (ավելի քան 60 քառակուսի մետր տարածությամբ հատակով), 13 էլեկտրահնոց, չորս մամլող դազգյահ և էլեկտրոֆերրոձուլվածքների յերկու ցեխ (11 հնոց Միգեյի և Գերույի սիստեմով): 1936 թվականին գործարանը տվեց 687 հազար տոնն թուջ, 572 հազար տոնն պողպատ և 114 հազար տոնն մամլած մետաղ: 1936 թվականին Զապորոժստալում վերջանում է բարակ յերկաթաթիթեղ պատրաստող ԽՍՀՄ-ի ամենամեծ դազգյահի կառուցումը:

Մյուս նոր գործարաններից հիշատակենք հետևյալները՝ Ազովստալը Մարիուպոլում, Նովոտագիլի գործարանն Ուրալում, Կրիվոյ Ռոգի գործարանը՝ ԽՍՀՄ-ի յերկաթա-

հանքի ամենախոշոր ավազանի շրջանում, Նովայա Տուլայի գործարանը (Տուլա քաղաքի մոտ), Նովոլիպեցկի գործարանը և մի շարք այլ գործարաններ: Շատ հին գործարաններ վերակառուցվեցին անճանաչելի կերպով և կարող են դասվել գործարանների նույն շարքում՝ Մակեյեվկայի Կիրովի անվան գործարանը Դոնբասում, Ձերժինսկու անվան գործարանը Դնեպրոպետրովսկի մոտ, Ստալինի անվան գործարանը Դոնբասում և ուրիշները: Այդ գործարանները դարձան համարյա նույնպիսի հսկաներ, ինչպիսիք հանդիսանում են «Մագնիտկան» ու Կուզնեցկի գործարանը և նրանց գործարանային հրապարակներում համարյա անհնարին է գտնել հին կառուցվածքների հետքերը, կառուցվածքներ, վորոնց գլխի մասը քանդվել է, յեթե դրանք արմատական վերակառուցման չեն յենթարկվել: Մակեյեվկայի գործարանում և Ձերժինսկու անվան գործարանում գործարկվել են բլյումինգներ, իսկ «Մակեյեվկայում» կառուցվել են յերեք նոր խոշոր հալոցներ և այլն:



## ԳՈՒՆԱՎՈՐ ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱ

Ցարական Ռուսաստանը միշտ էլ պղնձի, ցինկի, արճիճի, անագի և այլ գունավոր մետաղների սուր կարիք է զգացել և ներմուծել է դրանք արտասահմանից: Մինչև 1932 թվականը մեզ մոտ ալյումինիումի արտադրություն բոլորովին չի յեղել: Ելեկտրաշինարարությունը, ելեկտրասարքավորման արտադրության զարգացումը, ինքնաթիռների կառուցումը և այլ ճյուղեր հսկայական պահանջ են ներկայացնում գունավոր մետալուրգիայի արտադրման նկատմամբ: Վերջին տարիներս կառուցվեցին մի շարք հսկաներ, մյուսները դեռ կառուցվում են: Մեր յերկիրն արդեն այժմ դարձել է գունավոր մետաղներ արտադրող աշխարհիս խոշորագույն յերկրներից մեկը:

Վերջին տարիներս կառուցվեց Կրասնոուրալսկիյ պղնձաձուլական գործարանն Ուրալում, նա արդեն 1936 թվականին տվեց 23 հազար տոնն պղինձ, վոր կազմում է Միության ամբողջ տերիտորիայի նախապատերազմյան արտադրանքի յերեք քառորդը:

Պղնձի ձուլումը կենտրոնացված է մեծ

մասամբ խոշորագույն գործարաններում: 1936 թվականին յերեք գործարաններ տվին յերկրում արտադրվող ամբողջ պղնձի 65 տոկոսը:

Գունավոր մետալուրգիան նախկին ժամանակներում համարյա ամբողջովին գտնըվում եր Ուրալում: Ներկայումս գունավոր մետալուրգիայի նոր բազա յե ստեղծվում Ղազախստանում և Կիրկիզիայում, վորտեղ գործարկվեցին հարստացուցիչ և պղնձաձուլական գործարաններ Կարսակպայում, Աչիսայան արճիճա-ցինկային հանքախորը՝ հարստացուցիչ գործարանով և Չիմկենդյան արճճի գործարանը: Մի քանի անգամ ընդարձակվեց արտադրությունը Ռիդդերում (Ալթայ): Ներկայումս կառուցվում ե աշխարհիս ամենախոշոր ձեռնարկություններից մեկը՝ Մերձբալխաշյան կոմբինատը՝ հարյուր հազար տոնն պղնձի նախագծային կարողությամբ, այսինքն այնպիսի արտադրանքով, վորը հավասար ե լինելու Միության բոլոր պղնձաձուլական գործարանների 1936 թվականի արտադրանքին և ավելի քան յերեք անգամ գերազանցելու յե պղնձի 1913 թվականի ամբողջ ձուլումը: Առաջիկա մեկ-յերկու տարում, բացի Բալ-



խաշի առաջին հերթից, շահագործման են հանձնվելու Բլյավինյան կոմբինատը (Որսկի մոտ, Օրենբուրգի մարզում), «Սրեդուբալմետստրոյը» և ուրիշները:

Ալյումինիումի արտադրությունը, վորը հսկայական քանակությամբ ելեկտրոեներգիա յե պահանջում, գտնվում ե եժան ելեկտրոեներգիա տվող յերկու հիդրոկայանների շրջանում՝ Դնեպրովյան և Վոլխովյան շրջաններում: 1932-ից մինչև 1936 թվականը ալյումինիումի արտադրությունը աճեց 36 անգամ: Մոտ ժամանակներս շահագործման ե հանձնվում ալյումինիումի յերրորդ գործարանն Ուրալում:

## ՄԵՔԵՆԱՇԻՆՈՒԹՈՒՆ

Ժողովրդական տնտեսության վերակառուցման իրականացումը մեզանից պահանջեց ստեղծել սեփական մեքենաշինական բազա: Կարելի յե ընդունել, վոր խորհրդային մեքենաշինությունը հիմնականում ստեղծվել ե առաջին և յերկրորդ հնգամյակի տարիներին: Մեքենաշինության և մետաղամշակման ընդհանուր արտադրանքն սկսած նախապատերազմյան շրջա-

նից, աճել է ավելի, քան 20 անգամ, իսկ 1928 թվականից մինչև 1936 թվականը՝ 13 անգամ: Այժմ մեր ունեցած բոլոր խոշոր մեքենաշինական գործարանները կամ կառուցվել կամ կատարելապես վերակառուցվել են վերջին տարիներս: 1933 թվականին մեքենաշինության ու մետաղամշակման ճյուղերում կար 356 խոշոր ձեռնարկություն, որոնցից յուրաքանչյուրն ուներ ավելի քան հազար բանվոր: Այդ 356 գործարանները, կազմելով այդ ճյուղի բոլոր ձեռնարկությունների մեկ յերրորդ տոկոսից պակաս ըստ քանակի, իրենց մեջ կենտրոնացրել եյին բոլոր հիմնական արտադրական ֆոնդերի մոտ 70 տոկոսը, շարժիչների կարողության ավելի քան 70 տոկոսը և բոլոր բանվորների կես մասը:

Մեքենաշինական ամենից ավելի աչքի ընկնող ձեռնարկություններն են՝

Ստալինգրադի տրակտորային գործարանը՝ առաջին հնգամյակի առաջնեկը, ինչպես կոչվել եր հիմնադրման ժամանակ: Այդ գործարանը կառուցվեց առաջին հնգամյակի հենց սկզբին՝ 1929–1930 տարում: Ստալինգրադի տրակտորային գործարանն իր 5–6 տարվա աշխատանքի ընթացքում



տվեց 200 հազար անիվավոր տրակտոր: Ստալինգրադի տրակտորային գործարանը խոշոր մեքենաների կոնվեյերային արտադրության առաջին գործարանն եր, որ կազմակերպվել եր ԽՍՀՄ-ում, և այդպիսի արտադրության յուրացումը սկզբում շատ դանդաղ եր ընթանում: Սակայն յուրացման պրոցեսում գործարանում կոփվեցին փայլուն կադրեր, որոնք հետագայում մասնակցեցին խոշոր կոնվեյերային արտադրության կազմակերպմանը մյուս նոր գործարաններում: Ներկայումս Ստալինգրադի տրակտորային գործարանն անցնում է «ՍՏԶ-ՆԱՏԻ» տիպի թրթուրակերպ տրակտորների արտադրության:

Խարկովի տրակտորային գործարանը գործարկվեց 1931 թվականին: Հենվելով Ստալինգրադի գործարանի փորձի վրա, Խարկովի տրակտորային գործարանը կարճ ժամանակամիջոցում յուրացրեց իր նախագծային կարողությունը և հետագայում հետ չի մնացել Ստալինգրադի տրակտորային գործարանից: Իր աշխատանքի տարիներին Խարկովի տրակտորային գործարանը տվեց ավելի քան 160 հազար տրակտոր:

Չելյաբինսկի տրակտորային գործարանը շահագործման հանձնվեց 1933 թվականին։ Ի տարբերություն Ստալինգրադի և Խարկովի տրակտորային գործարանների, որոնք արտադրում էին 15 ուժանոց անիվավոր տրակտորներ, Չելյաբինսկի գործարանում կազմակերպվեց հզոր 48 ուժանոց թրթուրավոր տրակտորների արտադրությունը։ Գործարանի մաշտաբի մասին գաղափար կարելի յե կազմել նրանից, որ սոցիալիստական քաղաքի հետ միասին նա գրավում է ավելի քան 1000 հեկտար տարածություն, իսկ նրա ցեխերի տարածությունը կազմում է 183 հեկտար։ Միմիայն մեխանիկական հավաքման ցեխի յերկարությունը հասնում է 540 մետրի, իսկ տարածությունը կազմում է 8,5 հեկտար։ Այդ ցեխում դրված են 1160 զանազան դազգյահ։ Չելյաբինսկի տրակտորային գործարանը հզոր թրթուրավոր տրակտորների ամենախոշոր և ամենաառաջավոր գործարանն է աշխարհում։ Նրա տեխնիկական զինվածությունը ավելի լավ է, քան Ֆորդի և Կատերպիլլերի գործարաններն Ամերիկայում։ Իր չորս տարվա աշխատանքի ընթացքում, գործարանը տվեց ավելի քան



60 հազար տրակտոր, որոնցից 29 հազարը միայն 1936 թվականին։

Ստալինի անվան ավտոմոբիլային գործարանը Մոսկվայում գործարկվել է 1931 թվականին։ Արտադրում է միջակ կարողությամբ բեռնակիր ավտոներ (յերեք տոննանոց), ինչպես և ավտոբուսներ։ 1936 թվականի վերջերին նա արտադրեց Բյուիկ և Լինկոլն տիպի առաջին մի քանի մարդատար լիմուզիններ («ԶԻՍ—101»)։ Գործարանը կառուցվել է այնտեղ, որտեղ ցարական ժամանակներում կապիտալիստ Ռյաբուշինսկին հիմնել էր ավտոմոբիլներ հավաքող փոքր արհեստանոցներ։ Գործարկման պահից մինչև այժմ գործարանը տվել է մոտ 150 հազար ավտոմեքենա։

Գորկու Մոլոտովի անվան ավտոմոբիլային գործարանը ԽՍՀՄ-ի ամենախոշոր ավտոմոբիլային գործարանն է, որ կառուցված է դատարկ տեղում Գորկիյ քաղաքի մոտ։ Գործարանը շահագործման է հանձնված 1932 թվականին։ Նա պատրաստում է փոքր բեռնատար ավտոներ (մեկ և կես տոննանոց), ինչպես և մարդատար մեքենաներ։ 1936 թվականին գործարանն անցավ նոր սահընթաց մոդելով մարդատար

ավտոմեքենաների արտադրության: Իր գոյության ընթացքում գործարանը յերկրին տվեց 180 հազարից ավելի բեռնատար և 50 հազար մարդատար մեքենա:

Ծանր մեքենաշինության Ուրալի գործարանը Սվերդլովսկում: Ըստ նախագծային կարողության, նա պետք է տա 100 հազար տոնն ամեն տեսակ մեքենա, գլխավորապես մետալուրգիական գործարանների սարքավորում: Գործարանն արտադրում է ամենաբարդ մեքենաներ, վորոնք մինչև նրա գործարկումը (1933 թվականը) մենք ներմուծում եյինք արտասահմանից: Գործարանն իր նախագծային կարողությամբ տարեկան պետք է արտարկի մետաղաձուլական այնքան սարքավորում, վորքան անհրաժեշտ է Մագնիտոգորսկի գործարանի նման գործարան սարքավորելու համար:

Ծանր մեքենաշինության Կրամատորսկի գործարանը նույնքան խոշոր է, վորքան և Ուրալինը: Գործարկվեց 1934 թվականին: Գործարանը բռնում է 290 հեկտար տարածություն, իսկ սոցիալիստական քաղաքի հետ միասին՝ մոտ 1000 հեկտար: Գործարանը սարքավորված է ամենակատարյալ



սարքավորումով և խոշորագույններից մեկն է աշխարհում:

Կագանովիչի անվան գնդակավոր առնակալների գործարանը Մոսկվայում—նույնպես խոշորագույններից մեկն է աշխարհում: 1936 թվականին արտարկեց ավելի քան 30 միլիոն առանցքակալ:

Վորոշիլովգրադի (նախկին Լուգանսկի) շոգեքարշերի գործարանը գործող ձեռնարկությունների շարքը մտավ 1933 թվականին: Գործարանը, լիակատար կարողությամբ աշխատելու դեպքում, ամենահզորն է լինելու Յեվրոպայում և յերկրորդ տեղն է գրավելու աշխարհում ամերիկյան «Բոլդուին Լոկոմոտիվ Վորքս» գործարանից հետո, իսկ սարքավորման տեխնիկական մակարդակով գերազանցելու յե այդ գործարանից: Գործարանն արտարկելու յե ապրանքատար հզոր «ՖԴ» շոգեքարշեր, իսկ 1936 թվականի վերջերից սկսեց յուրացնել հզոր մարդատար «ԻՍ» շոգեքարշերի արտադրությունը: Իր յերեք տարվա աշխատանքի ընթացքում գործարանը տվեց ավելի քան 1400 «ՖԴ» շոգեքարշեր, վորոնք ըստ արժանվույն հռչակ են վայելում ԽՍՀՄ-ի տրանսպորտնիկների շարքերում:

Շոգեքարշերի այդ քանակից 664 «ՖԴ» շոգեքարշ արտադրվեց 1936 թվականին:

Խարկովի տուրբոգեներատորային գործարանը: Գործարանն արտադրում է տուրբիններ և գեներատորներ, այսինքն սարքավորում էլեկտրակայանների համար: Նախագծված կարողությանը հասնելու դեպքում, գործարանը կկարողանա տալ տարեկան 1,5 միլիոն կիլովատ կարողությամբ սարքավորում, այսինքն յերեք Դնեպրոգեսի չափ: Գործարանն ամենախոշորն է աշխարհում: Անգլիական «Մետրոպոլիտեն Վիկկերս» և ամերիկյան «Ջեներալ-էլեկտրիկ» գործարաններն իրենց շենքերի չափով, սարքավորման նորությամբ ու քանակով, հետ են մնում Խարկովի տուրբոգեներատորային գործարանից: Գործարանը 1937 թվականին տալու յե ԽՍՀՄ-ում առաջին տուրբինը 1100 կիլովատ կարողությամբ:

Ստորին Տագիլի վագոնաշինական գործարանը: Լրիվ ավարտվելուց հետո, այդ գործարանը կկարողանա արտադրել մեծաբեռ քառասռնի 70–75 հազար վագոն: Երկսռնի վագոնների հաշվով, այդ կկազմի 140–150 հազար վագոն, այսինքն համարյա



կրկնապատիկ ավելի, քան տվել են բոլոր աշխատող գործարանները 1936 թվականին և տասն անգամ ավելի, քան արտադրվել է ցարական Ռուսաստանում 1913 թվականին: Դա ավելի յե նաև աշխարհումս գործող ամեն մի մեքենաշինական գործարանի արտադրանքից: 1936 թվականի վերջերին գործարկվեցին նախապատրաստող մի քանի ցեխերը (Գրիֆֆինի անիվների, պողպատաձուլ, սռնասայլակային ցեխերը) և հավաքվող ցեխի մի մասը՝ 15–20 հազար քառասռնակ վագոնի կարողությամբ:

Վերջին տարիներս գործարկված մյուս խոշոր գործարաններից մատնանշենք՝ Մոսկվայի Օրջոնիկիձեյի անվան ռեվոլվերային դազգյահների գործարանը, Գորկու ֆրեզերային դազգյահների գործարանը, Մոսկվայի ֆրեզերային գործիքների գործարանը, «Կալիբր» գործարանը Մոսկվայում, Ռոստովի գյուղատնտեսական մեքենաշինության գործարանը, Սարատովի կոմբայնների գործարանը և տասնյակավոր այլ գործարաններ:

Արդյունաբերության տեխնիքական վերակառուցման և սոցմրցման զարգացման հետևանքով բանվորի աշխատանքի արտա-

դրողականությունը 1935 թ. ավելացավ 1,9 անգամ 1929 թ. համեմատ և ավելի քան 2,5 անգամ 1913 թ. համեմատ: Արդյունաբերության մեջ ստախանովյան շարժման ծավալումը 1936 թ. ապահովեց աշխատանքի արտադրողականության աճը 22–23 տոկոսով 1935 թ. դիմաց, 2,3 անգամ ավելի 1928 թ. և ավելի քան 3 անգամ 1913 թ. համեմատ:

Սոցիալիզմի հաղթանակը գյուղացիական տնտեսության մեջ մանր, մասնահատված գյուղական տնտեսությունը, որը հիմնված էր չափազանց հետամնաց տեխնիկայի և աշխատանքի կազմակերպման վրա, դարձրեց աշխարհիս ամենախոշոր գյուղատնտեսությունը, որը զինված է առաջավոր տեխնիկայով: 1936 թ. գյուղատնտեսության մեջ կային 250 հազար խոշոր գյուղատնտեսական ձեռնարկություններ, որոնցից 4295 խորհտնտեսություն և 243,6 հազար կոլտնտեսություն: Կոլտնտեսության միջին չափը 1936 թ. բնորոշվում էր հետևյալ տվյալներով. մի կոլտնտեսության ցանքի տարածությունը կազմում էր 444 հեկտար, մի կոլտնտեսություն ուներ հիմնական արտադրական ֆոնդեր 42 հազար



ռուբլու արժողությամբ: Նման գյուղատնտեսական ձեռնարկությունն իր չափով ոչ միայն մի քանի անգամ անցնում է անհատական գյուղական տնտեսությունից, այլև չի զիջում ցարական Ռուսաստանի միջին և նույնիսկ միջակից բարձր կալվածատիրական տնտեսությանը:

Սակայն իրենց, կոլտնտեսությունների հիմնական արտադրական ֆոնդերը դեռևս լիակատար չեն բնորոշում նրանց տեխնիկական սարքավորումը: 1936 թ. վերջին կոլտնտեսությունները սպասարկվում էին 5 հազար մեքենատրակտորային կայանների կողմից: 1936 թ. սկզբին գյուղատնտեսության մեջ կար 360 հազար տրակտոր, և 1936 թ. ընթացքում նորից տրվեց գյուղատնտեսությանը 100 հազար տրակտոր: 1936 թ. վերջին սոցիալիստական հողագործությունն ուներ 92,9 հազար կոմբայն: Այս բոլորի հետևանքով փոխվեց գյուղատնտեսության էներգետիկ ռեսուրսների կառուցվածքը. եթե 1928 թ. գյուղատնտեսության էներգետիկ ռեսուրսների 4 տոկոսն էին կազմում մեխանիկական շարժիչները և 96 տոկոս աշխատող անասունը, ա-

պա 1936 թ. սկզբին՝ մեխանիկական շարժիչները կազմեցին 50 տոկոսը։

Շնորհիվ խորհտնտեսությունների ու ՄՏ կայանների լայն զարգացմանն ու սոցիալիստական արդյունաբերության կողմից գյուղատնտեսությանը ցույց տրվող օգնության, գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացումը հասավ բարձր մակարդակի։ 1928 թ. գարնանացանի 10 տոկոսը վարված էր չթով և այլ պրիմիտիվ գործիքներով, իսկ տրակտորավարը կազմում էր միայն 1 տոկոս։ 1936 թ. տրակտորավարը կազմում էր 50,4 տոկոս, իսկ չութը ԽՍՀՄ գյուղատնտեսության դաշտերից իսպառ չքացել է։ 1928 թ. հացահատիկների 44,4 տոկոսը հավաքվել էր ձեռքով—գերանդիով և մանգաղով։ Հունձը մեքենայով կազմում էր միայն 0,2 տոկոս, իսկ կոմբայններ բոլորովին չկային։ 1936 թ. ձեռքով հունձը կազմում էր արդեն 15,6 տոկոս, իսկ տրակտորային ինվենտարի հունձը՝ 35,6 տոկոս, որի թվում՝ կոմբայններով հնձված էր ամբողջ հացահատիկների 26,6 տոկոսը։

1928 թ. բոլոր հացահատիկների 40,7 տոկոսը կալսված է ձեռքի օգնությամբ. կալ-



սիչների օգնությամբ՝ միայն 1,3 տոկոս։ 1936 թ. կալսիչներն ու կոմբայնները կալսել են հացահատիկների 77,7 տոկոսը։

Առաջին հնգամյակի վերջին տարիների կոլեկտիվացման արագ տեմպերն ուղեկցվում էին սուր դասակարգային պայքարով։ Ինչպես հայտնի է, դասակարգային թշնամուն հաջողվեց այդ շրջանում վնասել գյուղատնտեսությանը։ Դասակարգային պայքարն ուղեկցվեց անասունների մասսայական մորթումով, ցանքերի վատ մշակումով, որը հանգեց դաշտերը մոլախոտերով ծածկելուն և այլն։ Մեր կուսակցության և նրա առաջնորդ ընկեր Ստալինի հաստատուն քաղաքականությունը, որն ուղղված էր կոլտնտեսային կարգերի ամրացմանը, ապահովեց այդ դժվարությունների հաղթահարումը։ Վերջին ժամանակներս կոլտնտեսությունները ամրացել են, արագ տեմպերով նրանք վերականգնում են կենդանաբուծությունը և մեծ հաջողությամբ նրանք հաղթահարեցին 1936 թ. վատ կլիմայական պայմաններն ու լավ բերք հավաքեցին։ Արդեն 1935 թ. գյուղատնտեսության արտադրանքը 1½ անգամ բարձր էր 1913 թ.։

**ԽՍՀՄ-Ի ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ.—** Արտադրության գործիքների ու միջոցների վրա մասնավոր սեփականության լիկվիդացիան և այդ գործիքների ու միջոցների վորպես ժողովրդի և կամ կոլտնտեսությունների ու կոոպերատիվ միավորների սեփականություն դառնալը խորը, արմատական փոփոխություններ առաջ բերեց ԽՍՀՄ-ի ազգաբնակության դասակարգային կառուցվածքում:

Այդ արմատական փոփոխություններն այն են, վոր ամենից առաջ վերացվեցին պարազիտ (մակաբույծ) դասակարգերը: 1913 թ. 22,1 միլիոն մարդ կազմում եյին կալվածատերերը, քաղաքային խոշոր և մանր բուրժուազիան, առևտրականները և կուլակներն ու նրանց ընտանիքի անդամները: 1934 թ. սկզբին այդ պարազիտ դասակարգերի ներկայացուցիչները կազմում եյին 174 հազար հոգի: Հիմա դրանք էլ չկան: Այս սոցիալիզմի հսկայական ու վճռական հաղթությունն է ԽՍՀՄ-ում:

Բայց չի կարելի մոռանալ, վոր թեև արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության վերացման հետ



միաժամանակ վերացվել են և հասարակության պարազիտ դասակարգերն իբրև հատուկ դասակարգեր, բայց այն մարդիկ, վորոնք կազմում եյին այդ դասակարգերը, դեռևս ապրում են մեզ հետ միասին: Նրանցից շատերը սոցիալիստական շինարարության հնոցում վերափոխվել են ու դարձել ազնիվ սոցիալիստական աշխատողներ, բայց այդ պարազիտ դասակարգերից դուրս յեկածներից շատերը պահպանել են իրենց հին սեփականատիրական, շահագործողական իդեոլոգիան (մտայնությունը), մնում են սոցիալիզմի անարդ թշնամիներ և վարպետորեն դիմակավորվելով և միակցվելով ֆաշիստական յերկրների գործակալների հետ, շարունակում են վնասել սոցիալիզմի շինարարությանը: Չի կարելի նույնպես և մոռանալ այն, վոր դեռևս ապրում են վոչ աշխատավոր տարրերը՝ կրոնավորները և ուրիշները, վորոնք ապրում են վոչ աշխատանքային յեկամուտներով: Այս անձինք հանդիսանում են թշնամի գաղափարախոսության հաղորդիչներ և կապիտալիստական հասարակության արատների և մնացուկների կրողներ: Սակայն նրման մարդկանց առկայությունը, վորոնք

անչուչտ արգելակում են սոցիալիստական շինարարությանը, վոչ մի կերպ չի կարող նսեմացնել ԽՍՀՄ պարազիտ դասակարգերի վերացման պատմական նշանակությունը:

ԽՍՀՄ-ում մնացել են բանվոր դասակարգը, գյուղացիության դասակարգը և ինտելիգենցիան, վորոնք կրել են խոշորագույն փոփոխություններ:

ԽՍՀՄ բանվոր դասակարգը քանակապես աճել է: 1929 թ. ունեյինք 7,8 միլիոն ֆիզիկական աշխատանքի բանվորներ, 1935 թ. 2 անգամ ավելի—16 միլիոն և 1936 թ. 16,5 միլիոնից ավելի: Ընտանիքի անդամների հետ միասին նրանք կազմում են 35 միլիոն մարդ, այսինքն ԽՍՀՄ ազգաբնակության մեկ հինգերորդ մասը: Բայց գլխավորը քանակական փոփոխությունները չեն: Ընկեր Ստալինն իր զեկուցման մեջ Խորհուրդների Համամիութենական 8-րդ համագումարին առավելագույն պարզությամբ ցույց տվեց, վոր փոփոխվել է բանվոր դասակարգի բուն էությունը: Նա ասաց,— «ԽՍՀՄ-ի պրոլետարիատը փոխարկվել է միանգամայն մի նոր դասակարգի, ԽՍՀՄ-ի



բանվոր դասակարգը, վորը վոչնչացրել է տնտեսության կապիտալիստական սիստեմը, հաստատել է արտադրության գործիքների ու միջոցների սոցիալիստական սեփականությունը և տանում է խորհրդային հասարակությունը կոմունիզմի ուղիով»:

Ավելի աչքեցուցիչ փոփոխություններ են տեղի ունեցել գյուղացիության դասակարգի հետ: 1913 թ. յերկրում հաշվվում եր 90,7 միլիոն գյուղացի—մենատնտեսներ և չկոոպերացված աշխատավոր տնայնագործներ իրենց ընտանիքների անդամների հետ միասին: Իսկ 1934 թ. սկզբին յերկրում կային 77 միլիոն կոլտնտեսականներ ու կոոպերացված տնայնագործներ ու արհեստավորներ իրենց ընտանիքների անդամներով և 37,9 միլիոն մենատնտես գյուղացիներ ու չկոոպերացված տնայնագործներ ու արհեստավորներ: Այսպես եր դրությունը յերեք տարի առաջ: Սակայն 1933 թ. կոլեկտիվացված եր գյուղացիական տնտեսությունների 64 տոկոսը, իսկ յերեք տարի հետո—1936 թ.—արդեն գյուղացիական տնտեսությունների 90 տոկոսը: Պարզ է, վոր ներկայիս գյուղացիությունը հիմ-

նականում կոլտնտեսական գյուղացիություն է, որը «իր աշխատանքը և իր ստացվածքը հիմնում է ոչ թե անհատական աշխատանքի ու հետամնաց տեխնիկայի վրա, այլ կոլեկտիվ աշխատանքի ու արդի տեխնիկայի վրա» (Ստալին)։ «Վերջապես մեր գյուղացիության տնտեսության հիմքում գտնվում է ո՛չ թե մասնավոր սեփականությունը, այլ կոլեկտիվ սեփականությունը, որն աճել է կոլեկտիվ աշխատանքի բազայի վրա» (Ստալին)։ Մեր խորհրդային գյուղացիությունը վաղուց արդեն ազատագրվել է կալվածատերերի շահագործումից, իսկ կուլակների վերացումից հետո—և կուլակների շահագործումից։ Խորհրդային իշխանությունը խլեց կալվածատերերի, վանքերի և ցարական գանձարանին պատկանող 150 միլիոն հեկտարից ավելի հողերը և այն հանձնեց խորհրդային գյուղացիությանն օգտագործելու։

Այսպիսով «Խորհրդային գյուղացիությունը—դա միանգամայն նոր գյուղացիություն է, որի նմանը դեռ չի իմացել մարդկության պատմությունը» (Ստալին)։



Աճել են և խորհրդային ինտելիգենցիայի շարքերը։ 1929 թ. յերկրում կային 4,4 միլիոն ծառայողներ։ 1936 թ. ծառայողների թիվն յերկրում կազմում եր արդեն 9 միլիոն։ Խիստ փոփոխվել է և ինտելիգենցիայի կուլտուրական մակարդակը։ 12 տարվա (1924 թ.—1935 թ.) ընթացքում 422 հազար մարդ ստացել են բարձրագույն կրթություն և 1645 հազար մարդ—լրիվ միջնակարգ կրթություն։ Ներկայիս մեր ինտելիգենցիայի 80—90 տոկոսը կազմում են բանվոր դասակարգի, գյուղացիության և աշխատավորության այլ խավերից դուրս յեկածները։ Չպետք է մոռանալ, որ մեր բուհերի ուսանողների 45–50 տոկոսը բանվորներից են, 15–20 տոկոսը գյուղացիներից, իսկ ուսանողների մնացած մասսան դուրս է յեկել արհեստավորների, ծառայողների, տնայնագործների ծոցից։ «Մեր խորհրդային ինտելիգենցիան—դա միանգամայն նոր ինտելիգենցիա յե, որը բոլոր արմատներով կապված է բանվոր դասակարգի ու գյուղացիության հետ» (Ստալին)։

Այսպիսով ջնջվում են սահմանագծերը դասակարգերի և սոցիալական խավերի միջև

ԽՍՀՄ-ում, ընկնում և ջնջվում են քաղաքական հակասությունները նրանց միջև: ԽՍՀՄ-ն անշեղ ու հետևողականորեն գնում է դեպի անդասակարգային հասարակություն: Այդ ուղիում հիմնականն արված է—վոչնչացված են շահագործող դասակարգերը, վոչնչացված է շահագործումը:

## Ի՞ՆՉ Է ՏՎԵԼ ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԽՍՀՄ-Ի ԱՇԽԱՏԱՎՈՐԻՆ

Սոցիալիզմի հիմնական առավելությունն այն է, վոր նա հիմնովին փոխում է մարդու դրությունը, նրան վերադարձնում է նրա կողմից առաջներում կորցրված մարդկային կերպարանքը, նրան դարձնում է բնության ուժերի տերը, մարդկային անձին կատարելագործում է բոլոր ուղղություններով ըստ նրա հոգեկան ու մտավոր ընդունակությունների:

Կապիտալիզմի որոք ամեն մի աշխատավոր՝ բանվոր թե գյուղացի—յենթակա յե բազմակողմանի ճնշման, ստրկացման, անձնավորության վոտնահարման: Կապիտալիզմը ջանում է մարդուն զրկել մարդ-



կային հատկություններից, նրա միջից վանել բանականությունը, զգացմունքները, ցանկությունները, կամքը և թողնել միայն «աշխատուժ», վորն ընդունակ է բերել հավելյալ արժեք:

Կյանքի այն պայմանները, վորոնք շրջապատում են մարդկանց և մինչև հիմա իշխել են նրանց վրա, կկորցնեն իրենց զորությունն ու կընկնեն մարդկանց իշխանության ու հսկողության տակ այն ժամանակ, յերբ մարդիկ կդառնան իրենց սեփական հասարակական հարաբերությունների տերերը:

Առաջներում, շահագործման թագավորության մեջ «օբյեկտիվ, դաղտնի ուժերը թագավորում եյին պատմության վրա», իսկ այժմ, սոցիալիզմի որոք, մեզանում —ԽՍՀՄ-ում, մարդիկ սկսել են «լրիվ չափով գիտակից, իրենք ստեղծել իրենց պատմությունը»: Մեզանից ամեն մեկը, հարվածայնորեն աշխատելով, կատարելով ու գերակատարելով պլանը, պահպանելով սոցիալիստական սեփականությունը, բարձրացնելով իր կուլտուրական մակարդակը, ստեղծում է իր սոցիա-

*լիստական յերկրի պատմությունը, վորպես վոչ թե հասարակական մեխանիզմի անվոգի մի վինտի (մանիկ), այլ վորպես մի մարդու, վորը գիտակցում է ընդհանրական շահերը, գիտե և բաժանում է կուսակցության գլխավոր գիծը և խորհրդային պետության ընթացիկ խնդիրներն ու իր կամքով, համառությամբ, նախաձեռնությամբ, յեռանդով այն իրագործում է պրակտիկայում: Մասնակցելով հասարակության կյանքին, պետության կառավարմանը, մասնակցելով մամուլին, քննարկելով խորհրդային իշխանության որենքների նախագծերը, հայտնաբերելով նախաձեռնություն ամեն մի ասպարեզում, մեզանից ամեն մեկն ստեղծագործում է իր սոցիալիստական հայրենիքի պատմությունը:* Ստալինյան Սահմանադրությունը, վորն արձանագրեց ԽՍՀՄ-ի քաղաքացիների արդեն նվաճած իրավունքներն ու պարտականությունները, մեր հայրենիքի ամեն մի քաղաքացու համար բաց է անում լայն հնարավորություններ ստեղծագործելու սոցիալիստական հասարակության և դրանով իսկ ամբողջ մարդկության պատմությունը:



*Ստալինյան յերկու հնգամյակների փառահեղ հաղթությունը լրիվ չափով ցույց է տալիս, թե այդ անծայրածիր յերկրի քաղաքացիներն ինչպես հյուսում են իրենց փայլուն պատմությունը:*

*Շահագործման թագավորության մեջ կյանքի պայմանները իշխում են մարդկանց վրա: Զքավորությունը, աղքատությունը, անգործությունը, ընկճվածությունը, բարոյական անկումն ամեն քայլափոխ սպասում են աշխատավոր մարդուն: Վոչ իր ազնվությամբ, վոչ իր համառ աշխատանքով, վոչ իր խնայողությամբ նա ի վիճակի չէ դուրս պրծնել նրանց ճանկերից:*

*Միայն սոցիալիզմի ժամանակ, յերբ աշխատանքի, ուսման, հանգստի, նյութական ապահովության, կնոջ և ազգությունների իրավահավասարության իրավունքները կենսագործված են, միայն այդ պայմաններում մարդն սկսում է իշխել իր կենսական պայմանների վրա, դառնում է իր բաղդը դարբնողը: Իր հարվածային աշխատանքով, իր կուլտուրական-տեխնիկական մակարդակը բարձրացնելով մեզա-*

նից ամեն մեկը կարող է հասնել իր կենսական պայմանների բարելավմանը, հասարակական հարստության ավելացմանը:

Աշխատանքի իրավունքը կազմում է մեր յերկրի քաղաքացու անձեռնմխելի իրավունքը, վորովհետև ստալինյան Սահմանադրությունն ասում է. «ԽՍՀՄ-ի քաղաքացիներն ունեն աշխատանքի իրավունք, այսինքն ապահովված աշխատանք ստանալու իրավունք, նրանց աշխատանքը վարձատրելով նրա քանակի ու վորակի համեմատ»:

Կապիտալիստական յերկրներում, ընդհակառակը, աշխատանքի իրավունքը միլիոնավոր աշխատավորների համար անիրագործելի յերազանք է: Ի՞նչպես կարող է աշխատանքի իրավունքի մասին խոսք լինել, յերբ վոչ լրիվ տվյալներով ԱՄՆ-ում 12,2 միլիոն անգործներ կան, Անգլիայում— 2 միլիոն, Գերմանիայում— 4,3 միլիոն, Ֆրանսիայում— 1,6 միլիոն, Լեհաստանում— 570 հազար: Ի՞նչպես կարող է այնտեղ աշխատանքի իրավունք լինել, յերբ նույնիսկ 1935 թ. արդյունաբերության ճգնաժամից դուրս գալու սկզբին ԱՄՆ-ում բանվորներն ու ծառայողները 17



տոկոսով քիչ եյին 1928 թ., Գերմանիայում— 13 տոկոսով, Լեհաստանում— 28 տոկոսով և այլն:

Իսկ ԽՍՀՄ-ում անգործությունը վերացված է վերջնականապես ու անվերադարձ: Ժողովրդական տնտեսության մեջ զբաղված բանվորների ու ծառայողների թիվն աճում է տարեց-տարի և 1936 թ. այդ թիվն 2,2 անգամ ավելի յեր 1928 թ. համեմատ: վերջին տարիներում 2 միլիոն մարդ տարեկան աշխատանք է ստանում մեզանում: Այս թիվը կազմում է ամեն տարի աշխատունակ դառնողների $^3/_5$ մասը, մնացած $^2/_5$ մասն աշխատանք է ստանում կոլտնտեսություններում, անասնագործական կոոպերացիայում և այլն:

Կապիտալիստական հասարակության մեջ աշխատանքն ըստ էության հարկադիր է, վորովհետև ամեն մի բանվոր աշխատում է վոչ թե իր, այլ կապիտալիստի համար, վոչ թե իր ցանկությամբ, այլ սովի ահից: Աշխատանքի արդյունքը բանվորին չի պատկանում, այդ արդյունքի արժեքի մի մասն ստանում է բանվորը վորպես աշխատավարձ, մնացածը յուրացնում է կապիտալիստը:

Աշխատանքը կապիտալի յերկրներում ծանր լուծ է, բայց այդ յերկրների բանվորներն ապահովված ել չեն նման աշխատանքի իրավունքով:

Սոցիալիզմի յերկրում աշխատանքն արմատապես փոխվել է: Վոչնչացվել են շահագործումը, ստրկությունն ու ճնշումը: Բանվորն աշխատում է վոչ թե կապիտալիստի, այլ իր և ամբողջ սոցիալիստական հասարակության համար, վերջին հաշվով ելի իր համար: Աշխատանքը ծանր լծից, ինչպիսին եր նա առաջներում, դարձել է պատվի, փառքի, հերոսության գործ:

Խորհրդային Միության բանվորների և ծառայողների աշխատավարձն աճում է տարեց-տարի: 1936 թ. բանվորների ու ծառայողների աշխատավարձի տարեկան ֆոնդը կազմում եր 71,4 միլիարդ ռուբլի այն ժամանակ, յերբ այդ ֆոնդը 1924—25 թ. թ. կազմում եր 3,8 միլիարդ ռուբլի: Ըստ նախնական տվյալների 1936 թ. բանվորի միջին աշխատավարձը կազմում եր տարեկան 2770 ռուբլի—1924-25 թ. թ. համեմատ 6 անգամով ավելի:

ԽՍՀՄ-ի բանվորների ու ծառայողների աշխատավարձի հսկայական աճի դիմաց,



կապիտալիստական պետությունների բանվորների ու ծառայողների աշխատավարձը կրճատվում է: Յեթե, որինակ, ԽՍՀՄ-ում աշխատավարձը 1935 թ. 2,8 անգամ բարձր եր 1929 թ., ապա ԱՄՆ-ում նա 18 տոկոս ցածր եր 1929 թ. մակարդակից, Գերմանիայում— 21 տոկոսով, Իտալիայում—18 տոկոսով, Ճապոնիայում՝ 18 տոկոսով: Այն ժամանակ, յերբ ԽՍՀՄ-ում աշխատավարձը բարձրանում է բանվորական որվա կրճատման հետ զուգընթաց, (8-ից 7 ժամ), կապիտալիստական յերկրներում աշխատավարձը կրճատվեց բանվորական որվա յերկարացման հետ միաժամանակ: ԽՍՀՄ-ում բանվորներն ու ծառայողները, բացի իրենց ձեռքն ստացած աշխատավարձից, ոգտվում են կուլտուր-կենցաղային սպասարկմամբ պետության և պրոֆմիությունների հաշվին: Այդ սպասարկման ծախսերը 1935 թ. կազմում եյին 12,2 միլիարդ ռուբլի 1927—28 թ. թ. 1,6 միլիարդ ռուբլու դիմաց:

Կապիտալիստական յերկրներում, ընդհակառակը, բանվորի աշխատավարձից դուրս են գալիս տուգանքները, հարկերը և այլ ծախսեր:

Վոչ պակաս ցայտուն է և գյուղացիու-

թյան կյանքի նյութական պայմանների փոփոխությունը: 1935 թ. գյուղացի—կոլտնտեսականն ամեն մի աշխատօրի դիմաց ստանում էր հացահատիկով, կարտոֆիլով, կանաչիով և դրամով մոտ 6,6 ռուբլի: Յեթե նկատի առնենք, որ կոլտնտեսականը միջին թվով վաստակում էր 280–300 աշխատօր, ապա նրա ընդհանուր վաստակը դրամի վերածած կլինի 1850—2000 ռուբլի: Իսկ մինչ հեղափոխությունն ամեն մի չքավոր ընտանիքի տարեկան միջին անձնական ծախքը կազմում էր 80 ռուբլի, հաշված նաև իր սեփական տնտեսությունից ստացած մթերքները: Յեվ այս պատճառով տարօրինակ չէ, որ յերկրի ապրանքապտույտը 1924 թ. 106 միլիարդ ռուբլուց ավելացավ 1936 թ. 17 անգամ:

ԽՍՀՄ-ի քաղաքացիների համար ապահովված է հանգստի իրավունքը: Բանվորական օրվա տևողությունը կազմում է 7 ժամ: Կոլտնտեսություններում 1936 թ. յեռուն աշխատանքի ժամանակ տղամարդկանց բանվորական օրվա տևողությունն էր 10,8 ժամ, իսկ կանանցը—9,5 ժամ: Մինչդեռ առաջներում գյուղացիներն յեռուն շրջանում աշխատում էին 15–16



ժամ, իսկ բատրակները— 17–20 ժամ:

Պետությունն ստեղծել է բոլոր պայմանները աշխատավորների կուլտուրական հանգստի, ժամանցի համար: Յերկրում աշխատում են 28,6 հազար կինո-սարքավորումներ, 724 թատրոն ու կրկես, 738 թանգարան, 228 հանգստի և կուլտուրայի պարկ: Կան 71,7 հազար ակումբ և խըրճիթ-ընթերցարան, 53,4 հազար մասսայական գրադարան 105,3 միլիոն գրքով, լույս են տեսնում 10 հազար լրագիր, 35 միլիոն օրինակ տիրաժով—տարեկան 6,1 միլիարդ օրինակով:

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱ-ՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՇՐՋԱՊԱՏՈՒՄԸ

*Աշխարհի $^1/_6$ մասում սոցիալիզմը մարդկության լավագույն ներկայացուցիչների յերազանքից իրականություն է դարձել: Բայց աշխարհի $^5/_6$ մասում դեռ իշխում է կապիտալիզմը, վոր սնում է գազանային նենգություն դեպի սոցիալիզմի առաջին յերկիրը: «Կապիտալիստական շրջապատումը՝ դա դատարկ ֆրազ չէ, դա շատ ռեալ և անախորժ մի յերևույթ է: Կապիտալիս-*



*տական շրջապատումը—դա նշանակում է վոր կա մի յերկիր—Խորհրդային Միությունը, վորն իր մոտ սոցիալիստական կարգեր է հաստատել և, բացի դրանից կան շատ յերկրներ—բուրժուական յերկրներ, վորոնք շարունակում են կապիտալիստական կյանք վարել և վորոնք շրջապատում են Խորհրդային Միությունը, առիթի սպասելով, վորպեսզի հարձակվեն նրա վրա, ջախջախեն նրան կամ, համենայն դեպս, ջլատեն նրա ուժը և թուլացնեն նրան»* (Ստալին): *Գազանացած ֆաշիստները, վորոնք իրենց յերկրների ազգաբնակությանը հասցրել են աղքատության յեզերքին, պատրաստում են հարձակում խորհրդային յերկրի վրա: Ֆաշիստները մեր յերկիրն են ուղղում լրտեսներ, դիվերսանտներ և տեռորիստներ: Նրանք մեր յերկրում հենվում են այն տարրերի վրա, վորոնք պայքարել ու պայքարում են կուսակցության և խորհրդային իշխանության դեմ: Տրոցկիստներն ու զինովյեվականները, աջ նախկին ոպոզիցիայի թափթփուկները, վորոնք բազմիցս դավաճանել են հեղափոխության գործին, դարձել են հայրենիքի վաճառված*

դավաճաններ ու սրիկաներ, վորոնք իրա
գործում են ԽՍՀՄ-ի քաղաքացու համա
ամենածանր չարանենգությունը: Ն
րանք լրտեսել են ֆաշիստակա
պետությունների ոգտին, կնքել նրան
հետ պայմանագրեր մեր սիրելի հայրենի
քի տերրիտորիայի վաճառման մասի
Նրանք պայթեցնում եյին մեր ֆաբրիկա
ներն ու գործարանները և պատրաստու
նոր մահափորձեր մեր կուսակցության
խորհրդային պետության ղեկավարներ
դեմ:

Հակահեղափոխական-ֆաշիստացած տրոց
կիստներն ու զինովյեվականները պայքա
րում եյին մեր յերկրում կապիտալիզմ
ռեստավրացիայի — կոլտնտեսությունների
ու խորհտնտեսությունների լիկվիդացիա
յի, շահագործման սիստեմի վերականգնո
ման, Խորհրդային Միության դեմ պատե
րազմը մոտեցնելու համար: Նրանք իրեն
այս դիվային ծրագիրը խորը թաքցնելո
մասսաներից՝ այն կիրառում եյին վնասա
րարության, լրտեսության, դիվերսիաներ
միջոցով: Խորհրդային մեծ յերկիրը սո
ցիալիստական շինարարության հսկայակա

նվաճումներով է դիմավորում միջազգայի
բանվորական տոն—Մայիսի 1-ը:

Մեր յերկրի նվաճումներն իրոք մեծ են
Սակայն այդ նվաճումներն ունեն իրեն
ստվերոտ կողմերը: Այդ նվաճումները քա
ղաքականության մեջ քիչ փորձառությու
ունեցող մարդկանց մոտ առաջացրել
պարծենկոտություն, ինքնավստահությու
գոռոզամտություն, և ինքնաթմբկահարու
թյան մթնոլորտում պատճառ դարձել մո
ռացության տալու խորհրդային յերկ
կապիտալիստական շրջապատման փաստ
չեն նկատում վնասարարություն, լրտեսու
թյան և դարանակալված թշնամու աշխա
տանքի այլ խորամանկ մեթոդներն ու ձ
վերը:

Մեր սոցիալիստական շինարարությ
առաջընթացի հետ միաժամանակ կատ
ղում են ջախջախված պարազիտ դասակա
գերի մնացորդները մեր յերկրում, ավ
սուր պայքարի միջոցների եյին նրանք դ
մում: Նրանց այս պայքարում ոգնում
ԽՍՀՄ-ի սահմաններից դուրս գտնվող թ
նամիներ: Ընկեր Ստալինը ասում է. «Մի
կլիներ կարծել, թե դասակարգային պա
քարի վոլորտը սահմանափակված

ԽՍՀՄ-ի սահմաններով: Եթե դասակ
դային պայքարի մի ծայրը գործում
ԽՍՀՄ-ի շրջանակներում, ապա նրա մյ
ծայրը ձգվում, հասնում է մեզ շրջապ
տող բուրժուական պետությունների սա
մանները: Այդ չեն կարող չգիտենալ ջա
ջախված դասակարգերի մնացորդները: Ե
հենց այն պատճառով, որ նրանք գիտ
այդ, նրանք այսուհետև էլ շարունակել
յեն իրենց կատաղի փորձությունները
Մոռացություն չտալ կապիտալիստակ
շրջապատումը, չտարվել տնտեսական շ
նարարության հաջողություններով, վե
տալ իդիոտական հիվանդության—անհ
դությունը, տիրապետել բոլշևիզմին
հասկանալ քաղաքական իրադրություն
մինչև վերջը կիրառել դեմոկրատակ
կենտրոնացման բոլշևիկյան սկզբունքներ
կուսակցության, խորհուրդների, պրոֆ
միությունների աշխատանքներում, ծավ
լել լայն ինքնաքննադատությունն ու քննա
դատությունը, քաղաքականապես դաստի
րակել սոցիալիզմ կառուցող միլիոնավ
մարտիկներին, կիրառելով այս՝ խորհրդա
յին յերկրի սոցիալիզմի հետագա զարգաց
ման ու ամրացման գործն առաջ կընթան
նոր թափով:

Ստալինյան մեծ Սահմանադրությունը ապահովում է խորհրդային դեմոկրատիայի հետագա ծաղկումը, նրա բարձրացումը նոր, ավելի բարձր աստիճանի: Ընտրողական սիստեմի հետագա դեմոկրատացումը (ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրություններ փակ քվեարկությամբ), համաժողովրդական հարցման մտցնումն ուժեղացնում են մասսաների հսկողությունը խորհրդային օրգանների վրա և ուժեղացնում վերջիններիս պատասխանատվությունը մասսաների առաջ:

Այդ դեմոկրատացումը բնավ չի նշանակում բանվոր դասակարգի դիկտատուրայի թուլացում:

ԽՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակը բաց արեց ուղիներ հասարակության հետագա փոխակերպումների համար կոմունիզմի հիմունքներով: Ստալինյան մեծ Սահմանադրությունն արձանագրելով ձեռք բերված նվաճումներն ու այն ամրացնելով օրենսդրական կարգով—մոբիլիզացիայի յե յենթարկում խորհրդային յերկրի բոլոր աշխատավորներին քաղաքական շրջադարձի պայմաններում «...նոր պայքարի՝ կոմունիզմի նորանոր հաղթություններ նվաճելու համար» (Ստալին):

# ՊԱՅՔԱՐ ՀԱՆՈՒՆ ՄԻԱՍՆԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ՝ ԸՆԴԴԵՄ ՖԱՇԻԶՄԻ ՈՒ ՊԱՏԵՐԱԶՄԻ

Այն ժամանակ, յերբ Խորհուրդների յերկրում ավարտվում է անդասակարգ հասարակարգ կառուցող 2-րդ հնգամյակը, սոցիալիզմը հաղթել է վերջնականապես ու անվերադարձ, բարձրացել է աշխատավորության տնտեսական, կուլտուրական մակարդակը, կյանքը դարձել է ուրախ և առատ, վորի հիման վրա ծավալվում է ստախանովյան շարժումը սոցիալիստական գործարաններում ու դաշտերում:

Խորհրդային իշխանությունը պատրաստվում է աշխարհիս ամենադեմոկրատիկ յերկրի կառավարության ընտրությանը նոր ստալինյան Սահմանադրության հիման վրա, ու վողջ աշխատավորությունը մեծ ցնծությամբ դիմավորում է համաժողովրդ-



ական տոնին մայիսի 1-ին, այդ նույն ժամանակ այլ է բանվոր դասակարգի ու բազմամիլլիոն աշխատավորության դրությունը կապիտալիստական յերկրներում: Նրանց տնտեսական, կուլտուրական կյանքը որեց-որ վատանում է, մեծ թվով մարդիկ քաղցամահ են լինում կամ քաղցից ստիպված ինքնասպանության են դիմում:

Ավելի վատ է աշխատավորության վիճակը ֆաշիզմի յերկրներում, ֆաշիզմը դա ֆինանսական կապիտալիզմի ամենագազանային ռեակցիոն դիկտատուրան է, անմարդկային տեռորն է բանվոր դասակարգի դեմ, նա արյան մեջ խեղդում է աշխատավորությանը, բարձրացնում բանվորների շահագործումը, խլում ու կուլակներին է հանձնում գյուղացիության հողերը: Ֆաշիզմը՝ այդ նոր համաշխարհային պատերազմ սարքողն է, պատերազմ դեմոկրատական յերկրների ու առաջին հերթին Խորհրդային իշխանության դեմ:

Գերմանիայի ռեակցիոն ֆաշիզմը աշխատավորությանը մատնելով քաղցի, բանվոր դասակարգի լավագույն զավակներին ֆիզիկապես վոչնչացնելով համակենտրոնացման ճամբարներում ու տեռորի միջոցով,

նույնպես պատրաստվում է «մեծ պատերազմի» ընդդեմ խորհրդային իշխանության, նա արդեն ռազմական դաշինք է կնքել Ճապոնիայի հետ ընդդեմ մեր յերկրի «Կոմինտերնի դեմ պայքարի» անվան տակ:

Ֆաշիստական Իտալիան, վորը ավիններով ու քիմիական գազերով, ամենադաժան կոտորածի միջոցով խլեց Հաբեշստանի ժողովրդից նրա ազգային ինքնուրույնությունը, դարձրեց նրան իր գաղութն ու վայրագորեն ներկայումս ճնշում ու շահագործում է Հաբեշստանի ժողովրդին, ներկայումս ֆաշիստական Գերմանիայի հետ միասին հոսեցնում է Իսպանիայի աշխատավորության արյունը:

Գերմանիան ու Իտալիան փաստորեն սկսել են պատերազմ Իսպանիայում, նրանք ցանկանում են բռնի ուժով տապալել իսպանական ժողովրդի կամքով ստեղծված ժողովրդական ճակատի դեմոկրատիկ հանրապետությունն ու հաստատել գեներալ Ֆրանկոյի ֆաշիստական դիկտատուրան, վոչնչացնել Իսպանիայի աշխատավորության արյունով ձեռք բերված դեմոկրատիան, ազատությունը:



Հեղափոխության դեմ, հանուն նոր համաշխարհային պատերազմի, ֆաշիզմը միասնական ֆրոնտ է ստեղծում ժողովրդական ճակատի հանրապետության դեմ, նա ինտերվենցիայի ու վարձկան գեներալների միջոցով վարում է բացարձակ պատերազմ: Սոցիալիստական մեր յերկրում նա վարձակալել է տրոցկիստներին—զինովյեվականներին, նախկին աջ թափթփուկներին, ֆաշիզմի այդ առաջավոր ջոկատին ու նրանց միջոցով դիվերսիաներ, շպիոնաժ ու վնասարարություն է կազմակերպում, վորպեսզի հարված հասցնի սոցիալիզմի յերկրին:

Ֆաշիստական-ռեակցիոն էլեմենտները բոլոր կապիտալիստական յերկրներում անցել են հարձակման և ձգտում են իշխանության:

Կապիտալիստական յերկրների բանվոր դասակարգն ու աշխատավորությունը վոգևորված ու խրախուսված ԽՍՀՄ-ի աշխատավորության նվաճումներով, իր ուժերն է համախմբում ընդդեմ ֆաշիզմի ու պատերազմի: Միջազգային պրոլետարիատի համերաշխության ու պայքարի մեծ տոնը, մայիսի 1-ը, նա կդիմավորի ընդ-

դեմ ֆաշիզմի և հանուն խաղաղության նշանաբանի տակ:

Կոմունիստական Ինտերնացիոնալի 7-րդ կոնգրեսից հետո դեռ չի անցել յերկու տարի ու այսոր մենք ունենք 7-րդ կոնգրեսի նշած նոր տակտիկայի հրաշալի հանրագումար: Կոմինտերնի բոլոր սեկցիաները յուրաքանչյուր առանձին յերկրի առանձնահատկություններին համապատասխան իրականացնում են ֆաշիզմի ու պատերազմի դեմ միասնական ճակատի կարեվորագույն խնդիրները:

## ԻՍՊԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉԸ

Ֆաշիզմի ու պատերազմի դեմ պայքարելու համաշխարհային ժողովրդական ճակատի ստեղծումը, միջազգային դեմոկրատիայի ճակատագիրը, բոլոր կապիտալիստական յերկրների զարգացման ընթացքը, շատ բանով կախված են այն հերոսական պայքարի յելքից, վորը մղում է իսպանական ժողովուրդը ֆաշիստ խռովարարների ու ֆաշիստ ինտերվենտների դեմ: «...Իսպանիայի ազատագրումը՝ ֆաշիստ ռեակցիո-



ներների ճնշումից, իսպանացիների մասնավոր գործը չէ, այլ ամբողջ առաջավոր ու պրոգրեսիվ մարդկության ընդհանուր գործը» (Ի. ՍՏԱԼԻՆ):

Հանրապետության գոյության հինգ տարվա ընթացքում, Իսպանիան անցավ բուրժուազիայի հետ սոցիալիստների կնքած կոալիցիայից, վոր կործանարար եր աշխատավորների համար, մինչև միասնական բանվորական ու ժողովրդական հակաֆաշիստական ճակատը: 1934 թվականի աշնանը, յերբ վարձկան Լերուսի կառավարությունը «ամրացվեց» ֆաշիստական «Ակցիոն պոպուլար»-ի յերեք ներկայացուցիչներով, վոր նշանակում եր ֆաշիստական դիկտատուրայի անմիջական վտանգ, բանվորական մասսաները վոտքի յելան և պատասխանեցին անհապաղ ընդհանուր գործադուլ հայտարարելով, վորը շատ վայրերում վերաճեց զինված պայքարի և Աստուրիայում վերածվեց զինված ապստամբության: Բանվորները, հերոսական պայքարից հետո, ջախջախվեցին, բայց չըպարտվեցին՝ այդ ցույց տվին հետագա իրադարձությունները:

Ռեակցիոն կառավարության յերկու տար-

վա տիրապետությունը տնտեսական ծանր քայքայման հասցրեց Իսպանիան: Աշխատավորների դրությունն անտանելի դարձավ: 1934 թվականի հոկտեմբերյան մարտերից հետո, ռեակցիայի կատաղի խրախճանքը կալվածատերերին հնարավորություն տվեց իջեցնելու բատրակների առանց այն էլ աղքատիկ աշխատավարձը: Ձեռնարկատերերը, կառավարության օժանդակությամբ, արշավ սկսեցին բանվորների կյանքի մակարդակի դեմ: Տասնյակ հազարավոր վարձակալներ, հողագուրկ և սակավահող գյուղացիներ դուրս քշվեցին իրենց գաճաճային հողամասերից: Վերացվեցին այն զիջումները, վորոնք արել էր նախկին կառավարությունը Կատալոնիայի ու Բասկերի յերկրի ճնշված ժողովուրդներին:

Ի պատասխան տեռորի և ուժեղացած ճնշման, սկսվեց ժողովրդական մասսայական շարժում:

Կոմկուսը, հիմնվելով հոկտեմբերի մարտերի փորձի վրա, մասսաներում լայն կամպանիա սկսեց հանուն միասնական ճակատի, խնդիր դնելով՝ ստեղծել բանվորական ու գյուղացիական ալյանսներ (միավորումներ, միություններ), վորպես աշխատա-



վորների գործողության միասնության հիմքը՝ ֆաշիզմի դեմ մղվող պայքարում:

Միաժամանակ, կոմկուսի նախաձեռնությամբ, պայքար էր մղվում պրոֆմիութենական միասնության համար: Իսպանիայում կան մոտ մեկ և կես միլիոն արհեստակցականորեն կազմակերպված արդյունաբերական ու գյուղատնտեսական բանվորներ, սակայն նրանք գաղափարականորեն ու կազմակերպչորեն մասնատված էին և խմբվել էին պրոֆմիութենական յերեք հիմնական կենտրոնների շուրջը: Աշխատանքի ռեֆորմիստական ընդհանուր միության մեջ, վորը ղեկավարում են սոցիալիստները, 1934 թվականի վերջերին կար մոտ 700 հազար անդամ: Աշխատանքի անարխո-սինդիկալիստական Ազգային կոնֆեդերացիայում՝ մոտ 500 հազար հոգի, աշխատանքի Ունիտար ընդհանուր կոնֆեդերացիայում և նրան հարող ինքնավար միություններում, վորոնք գտնվում էին կոմունիստների ղեկավարության տակ, կար 150 հազար անդամ: Յերկար ժամանակ վոչ անարխո-սինդիկալիստները, վոչ էլ նույնիսկ սոցիալիստները պատրաստակամություն չէին հայտնում համաձայնելու

պրոֆշարժման միավորմանը: Սոցիալիստների բանակում վորոշ բեկում սկսվեց 1933 թ. վերջերի ընտրություններին, նրանց պարտվելուց և կառավարությունից դուրս գալուց հետո: Սոցիալիստական կուսակցության չերտավորման և Լարգո Կաբալյերոյի կողմից ղեկավարվող նրա ձախ թևի աճմանը զուգընթաց, սոցիալիստական կուսակցության անդամների մեջ ավելանում եր գործողությունների միասնության և պրոֆմիասնության կողմնակիցների թիվը: Պրոֆմիությունների միավորումն սկսվեց տեղական զուգահեռ միությունների միաձուլումից: 1935 թվականի վերջերին համաձայնություն կայացվեց աշխատանքի Ընդհանուր կոնֆեդերացիան և աշխատանքի Ունիտար ընդհանուր կոնֆեդերացիան միաձուլելու, մի ազգային կազմակերպություն դարձնելու մասին: Դա մի խոշոր քայլ եր միասնական բանվորական ճակատ ստեղծելու ճանապարհին:

Այնինչ, կառավարական տեռորը շարունակվում եր՝ ռեակցիան ուզում եր մահվան դատավճիռներով ու մահապատիժներով ընկճել հեղափոխական մասսաների կամքը: Սակայն, հատկապես մահապատիժների ու



մահվան դատավճիռների դեմ մղվող պայքարում, բողոքի բազմաթիվ միտինգներում ու ցույցերում, վորտեղ թև թևի տված հանդես եյին գալիս քաղաքական բոլոր ուղղություններին պատկանող բանվորները և քաղաքային մանր բուրժուազիայի ներկայացուցիչները, հիմք դրվեց զանազան կուսակցությունների ներկայացուցիչների քաղաքական միահամուռ գործողություններին: Այստեղ առաջ յեկան հակաֆաշիստական ժողովրդական ճակատի սաղմերը:

Ընդհանուր ծրագրի հիման վրա, ժողովրդական ճակատի մեջ մտան՝ կոմկուսը, սոցիալիստական կուսակցությունը, յերիտասարդության սոցիալիստական միությունը, աշխատանքի Ընդհանուր միությունը, Ասանյայի գլխավորած ձախ-հանրապետական կուսակցությունը, Բարրիոսի գլխավորած հանրապետական կուսակցությունը, կատալոնյան ձախը և մի քանի ավելի փոքր այլ խմբավորումներ: Ժողովրդական ճակատի ծրագիրը չափավոր բնույթ եր կրում և պարունակում եր հետևյալ պահանջները՝ ներումն քաղաքական կալանավորներին, հոկտեմբերի մարտերի և գործադուլային պայքարի կապակ-

ցությամբ արձակված բանվորների վերընդունումը, 1932 թ. օգոստոսին միապետական պուտչին մասնակցած խոշոր կալվածատերերի հողերի բռնագրավումը, հողավարձի և գյուղացիական հարկերի իջեցումը, աշխատավարձի ավելացումը, պայքար գործազրկության դեմ, հասարակական աշխատանքների կազմակերպումը: Բուրժուական-հանրապետական կուսակցությունների ղեկավարները մերժեցին կոմկուսի առաջարկը՝ մտցնել ժողովրդական ճակատի ծրագրի մեջ մի կետ՝ կալվածատիրական, յեկեղեցապատկան և պետական հողերն առանց վարձատրության բռնագրավելու և դրանք գյուղատնտեսական բանվորների, հողազուրկ ու սակավահող գյուղացիների միջև բաշխելու մասին: Այնուամենայնիվ, ինչպես տեսնում ենք, ծրագրի մեջ մտցվեցին մի շարք պահանջներ ի պաշտպանություն գյուղացիության ամենազրկված մասի շահերի:

Ժողովրդական ճակատի առաջադրած պահանջների ժողովրդականությունը, բանվորական միասնական և ժողովրդական ճակատի առկայությունը, վորն ընտրու-



թյուններին մասնակից դարձրեց վոչ միայն կոմունիստ ու սոցիալիստ բանվորներին, այլև անարխո-սինդիկալիստ բանվորների մեծ մասսաներին, կորտեսների (պարլամենտ) ընտրությունների ժամանակ հաղթանակ բերեց ժողովրդական ճակատին, վորը փաստորեն միացրել եր դեմոկրատիկ հեղափոխության բոլոր ուժերը, հակաֆաշիստական բոլոր ուժերը: Ժողովրդական ճակատը մեծագույն հաջողություններ ձեռք բերեց արդյունաբերական խոշոր կենտրոններում, Կատալոնիայի նահանգում և ագրարային այն շրջաններում, վորտեղ գերակշռում են լատիֆունդիաները (խոշոր կալվածատիրությունները), այն է՝ Բադախոսում, Կասերեսում և այլն: Սոցիալիստները նվաճեցին 40 նոր մանդատ, կոմունիստները՝ 15 նոր մանդատ, ժողովրդական ճակատի կուսակցությունները միասին ստացան ամուր, ապահովված մեծամասնություն կորտեսներում:

Ասանյայի կառավարությունն իշխանության գլուխն անցավ ժողովրդական լայն շարժման հորձանքով: Նա շարունակ գըտնըվում եր ժողովրդական մասսաների վե-

րահսկողության ու ճնշման տակ: Զնայած, որ կառավարության մեջ մտան միմիայն մանր-բուրժուական հանրապետական կուսակցությունների ներկայացուցիչները, այնուամենայնիվ ժողովրդական ճակատի կառավարության առաջին ձեռնարկումներն էին՝ դեմոկրատիկ ազատությունների վերականգնումը, հազարավոր հեղափոխականների ազատումը բանտից, հոկտեմբերի կռիվներից հետո արձակված տասնյակ հազարավոր հեղափոխական բանվորների վերընդունումն աշխատանքի, ռեակցիոն ծառայողների հեռացումը քաղաքային վարչություններից և նրանց փոխարինումը ժողովրդական ճակատի ներկայացուցիչներով, ներառյալ նաև կոմունիստներով: Այդ բոլոր միջոցառումներն իրագործվում էին մասսաների ուժեղ ճնշմամբ: Հենց իրեն՝ կառավարության մեջ, որը, ինչպես արդեն ասվեց, կազմված էր մանր-բուրժուական կուսակցությունների ներկայացուցիչներից, կային շատ տատանումներ, անվճռականություն: Զկար ժողովրդական ճակատի բուն էության բավականաչափ ըմբռնում: Սասնյայի կառավարությունը չկիրառեց այնպիսի ան-



հրաժեշտ ձեռնարկումներ (որոնք համառորեն պահանջում էր կոմկուսը), ինչպիսիք են՝ հակահեղափոխական գեներալներ Ֆրանկոյի և Գոդեդի ձերբակալումը, ֆաշիստական կազմակերպությունների լուծարքը, պետական ապարատի, բանակի ու ոստիկանության զտումը, իսկ գլխավորը՝ լայն ձեռնարկումներ հօգուտ գյուղացիության: Վերջին հանգամանքը ֆաշիստական «Ակցիոն պոպուլար» կուսակցությանը հնարավորություն տվեց դեմագոգիկ, քայքայիչ լայն / աշխատանք կատարելու գյուղում:

Ժողովրդական ճակատի խնդիրները պարզորոշ կերպով չէին ըմբռնում նաև սոցիալիստական կուսակցության շարքերում՝ նրա շատ հեռու գնացած չերտավորումով և ուղղությունների փոխադարձ պայքարով: Միմիայն Լարգո Կաբալյերոյի ղեկավարած ձախ հոսանքը սերտորեն հարել էր կոմկուսին այն պայքարում, որը մղում էր կոմկուսը ժողովրդական ճակատի առջև ծառացած խնդիրներն իրականացնելու համար: Պրիետոյի ղեկավարած ցենտրիստները հակված էին ժողովրդական ճակատը դիտելու որպես պարլա-

մենտական մի բլոկ: Ղեկավար անարխիստների մեծ մասն ուղղակի թշնամաբար էր վերաբերվում ժողովրդական ճակատին և ամեն կերպ հետ էր պահում անարխիստ ու անարխո-սինդիկալիստ բանվորների ձգտումը դեպի գործողությունների միասնություն ու պրոֆմիասնություն:

Ժողովրդական ճակատի հաղթանակն ակնհայտ էր, բայց նա դեռ բավականաչափ չէր ամրացված: Ռեակցիան պահպանեց իր նյութական բազան: Ոստիկանությունը, քաղաքացիական գվարդիան, բանակը, նրա հրամանատարական կազմը հիմնականում նույնպես անփոփոխ մնացին: Ֆաշիզմի վտանգը չէր վերացված: Այդ պայմաններում մեծ նշանակություն ուներ կոմյերիտմիության և սոցյերիտմիության միավորումը, վորոնք արդեն դրանից առաջ՝ 1934 թ. հոկտեմբերի կռիվներին, արյամբ եյին ամրացրել իրենց յեղբայրական դաշինքը: 1936 թվականի մարտի վերջերին յերկու կազմակերպությունները ձուլվեցին, դարձան մասսայական մի յերիտասարդական միություն: Ինչպես նաև Ֆրանսիայում, միաձուլումն անդամների արագ հոսանք առեղծեց դե-



պի նոր միասնական կազմակերպությունը:

Հողային արիստոկրատիան և ռեակցիոն խոշոր բուրժուազիան ժողովրդական ճակատի հաղթանակին պատասխանեցին տնտեսական սաբոտաժով ու պրովոկացիայով՝ կապիտալների արտահանումով, դրանք բանկերից հանելով, պեզետի կուրսն իջեցնելով, մի շարք ձեռնարկություններ փակելով, գյուղատնտեսական աշխատանքները կրճատելով և, վերջապես, վարձկան մարդասպանների օգնությամբ («պիստոլերոս») աչքի ընկնող հեղափոխականներին սպանել տալով:

Համոզվելով, վոր ժողովրդական ճակատի մեջ ճեղքվածք առաջացնելու պրովոկացիոն բոլոր փորձերն ապարդյուն են, ռեակցիոներները վորոշեցին զինված ձեռքով վերադարձնել իրենց կորցրած դիրքերը: Գերմանական ու իտալական ֆաշիզմի ոժանդակությամբ, ռեակցիոն գեներալները, 1936 թվականի հուլիսի 18–ին, խռովություն բարձրացրին, վորն ինտերվենտների օգնության շնորհիվ ընդունեց տեվական, արյունահեղ քաղաքացիական պատերազմի բնույթ:

Քաղաքացիական պատերազմի բովում կոփվել ե և գնալով ավելի յե կոփվում ամուր, սերտորեն համախմբված, ժողովրդական ճակատը: Սեպտեմբերի սկզբներին, Տալավերայի անկումից հետո, կառավարության կազմը փոխվեց: Կառավարության գլուխն անցավ Լարգո Կաբալյերոն: Նոր կառավարության մեջ մտան մասսաներին ամենից ավելի մոտ կուսակցությունները «ժողովրդի ջանքերը համաձայնեցնելու համար», ինչպես ասում ե կառավարության դեկլարացիան: Լարգո Կաբալյերոյի կառավարության մեջ, ձախբուրժուական հանրապետական կուսակցությունների հետ միասին, մտան նաև սոցիալիստական կուսակցությունը, կոմունիստական կուսակցությունը և բասկյան նացիոնալիստների կուսակցությունը:

Այդ բուն ժողովրդական որինական կառավարության բոլոր ջանքերը կենտրոնացված եյին մի նպատակի վրա՝ ֆաշիզմի դեմ հաղթանակ տանելու, իսպանական դեմոկրատիկ հանրապետությունը պաշտպանելու վրա: Կամավորներից և առանձին ջոկատներից միլիցիայի ստեղծումը (վո–



րոնք հերոսաբար պայքար եյին մղում զանազան ճակատներում, սակայն հաճախ վարակված եյին պարտիզանական վոգով և տեխնիկապես թույլ եյին հանդերձված), այդ հիանալի մարտական տարրերից կարգապահ ժողովրդական բանակ ստեղծելը կենտրոնացված հրամանատարությամբ և հեղափոխական կարգապահությամբ, ռազմական արդյունաբերության ստեղծումը, վորն ընդունակ լիներ սպառազինելու բանակը և նրան անհրաժեշտ տեխնիկա տալու թշնամու հանդեպ, վորին ինտերվենտներն առատորեն մատակարարում են ավերի ամենակատարյալ գործիքներ,—սրանք են այն կենտրոնական խնդիրները, վորոնք ծառացել են Լարգո Կաբալյերոյի կառավարության առջև, և վորոնք, ինչպես ցույց ե տալիս Մադրիդի հերոսական պաշտպանությունը, նա հաջողությամբ ե լուծում:

Սակայն այդ ճանապարհին ժողովրդական ճակատի կառավարությունը բավականաչափ դժվարությունների հանդիպեց, վորոնց պատճառն եր մի քանի անարխիստ առաջնորդների վարքագիծը: Այդ մարդիկ, ի հակակշիռ ժողովրդական ճակատի ամ–

բողջ քաղաքական գծին, առաջադրեցին «Նոր սոցիալական կարգ»՝ «անարխո-կոմունիզմն» իրականացնելու խնդիրը: Այդ մարդիկ, ի հակակշիռ կենտրոնացված, կարգապահ ժողովրդական ճակատի, ոգոստոսի վերջերին, յերբ խռովարարների բանակն արագորեն առաջ եր շարժվում դեպի Մադրիդ, իրենց մամուլում փառաբանում եյին անկարգապահությունը և մի ամբողջ դիսկուսիա սկսեցին «անկարգապահություն կազմակերպելու» մասին: Սակայն անարխո-սինդիկալիստական բանվորները, իրենց մասսայով, չգնացին այդ պարտվողական լոզունգների հետևից, իսկ անարխիստների լավագույն ղեկավարները, ինչպիսին եր Դուրրուտին և ուրիշ շատերը, արդեն քաղաքացիական պատերազմի առաջին շրջանում ըմբռնեցին մի կենտրոնից ղեկավարվող միահամուռ պայքարի անհրաժեշտությունը: Պաշտպանությունն անմիջականորեն կազմակերպելու վիթխարի աշխատանք կատարեց կոմկուսը: Ժողովրդական բանակի շարքերում ամենուրեք կոմունիստները հանդիսանում եյին շաղկապող, ցեմենտող մի գործոն, իրենց անձնական որինակով ամրապնդելով հան-



րապետության պաշտպանների մարտունակությունը, ցույց տալով կարգապահության, արիության, անձնուրաց քաջության որինակներ: Կոմունիստական 5-րդ գունդը համաշխարհային հռչակ նվաճեց: Կոմկուսն իր քաղաքական ու ռազմական աշխատանքով հսկայական հեղինակություն նվաճեց ամբողջ յերկրում: Կոմկուսի ազդեցությամբ իրենց հին, խորապես սխալ հայացքները վերանայեցին անարխիստներն ու անարխո-սինդիկալիստները, ավելի սերտորեն ու գործունակ կերպով լծվելով ժողովրդական հակաֆաշիստական ճակատին:

Իսպանիայում, ինչպես և մյուս բոլոր յերկրներում, ամենաստոր դեր են խաղում տրոցկիստները: Վորքան ավելի յեր աճում ԽՍՀՄ-ի ժողովրդականությունն Իսպանիայում, վորքան ավելի յեր ընդարձակվում այն ոգնությունը, վորը ցույց ե տալիս մեր յերկիրն Իսպանիայի յերեխաներին ու կանանց, այնքան ավելի կատաղի եյին դառնում իսպանական տրոցկիստների հարձակումները ԽՍՀՄ-ի վրա, իսպանական կոմկուսի վրա, ժողովրդական ճակատի կառավարության վրա: Տրոց-

կլիտներն ուղղակի օգնություն էյին ցույց տալիս ֆաշիստ ինտերվենտներին, յերբ Բարսելոնի իրենց «Լաբատալյա» օրգանում պնդում էյին, թե Իսպանիայում բնավ դեմոկրատիկ հանրապետությունը պաշտպանելու համար չե, վոր պայքար ե մղվում: Կատալոնիայում տրոցկիստները, չնայած, վոր նրանց ներկայացուցիչը մըտնում եր կառավարության կազմի մեջ, կատարում էյին սուր քայքայիչ աշխատանք, վորի նպատակն եր կազմալուծել հակաֆաշիստական ժողովրդական ճակատը: Տրոցկիստներն առաջադրում էյին մի դեմագոգիկ լոզունգ՝ ստեղծել միմիայն բանվորական կազմակերպությունները ներկայացնող կառավարություն, և պահանջում էյին գործադրել մանր բուրժուազիայի դեմ ուղղված մի շարք տնտեսական ձեռնարկումներ: Խռովարար գեներալների ու ֆաշիստ ինտերվենտների ուղղակի գործակալների դերը կատարող տրոցկիստների այդ պրովոկատորական, վնասարար քաղաքականությունն ունեցավ այն հետևանքը, վոր նրանց ներկայացուցիչը հեռացվեց 1936 թ. դեկտեմբերի յերկրորդ կեսին կազմված Կատալոնյան



նոր կառավարության կազմից: Տրոցկիստները, չբավականանալով «գաղափարական պայքարով», անցան կոմկուսի և կառավարության առաջնորդների դեմ (Խոզե Դիաս, Լարգո Կաբալյերո, Ասանյա) մահափորձերի նախապատրաստման և անկյուններից կոմունիստների ուղղակի սպանություններին:

Չնայած արտաքին ու ներքին հսկայական դժվարություններին, Իսպանիայի ժողովրդական ճակատն աճում ու ամրապընդվում ե, աճում ե իսպանական ժողովրդի ռազմական, քաղաքական զորությունը, մի ժողովրդի, վորը հերոսական պայքարում անձնվիրաբար պաշտպանում ե վոչ միայն իսպանական դեմոկրատիան, այլև ամբողջ աշխարհի ազատությունն ու դեմոկրատիան:

Իսպանական ժողովուրդը, չնայած ֆաշիստական յերկրների բացարձակ ինտերվենցիայի, հերոսաբար պայքարում ե իր ազատության և անկախության համար: Իսպանական ժողովրդական բանակը ճակատ առ ճակատ կռվում ե իտալական ու գերմանական զինված ուժերի դեմ: Վերջերս Գվադալախարայի ճակատում Իսպա-

նիայի ժողովրդական բանակը հերոսաբար առաջ խաղաց, հասցնելով մեծ կորուստ իտալական զինված ուժերին: Այս փաստը վկայում է այն մասին, վոր հերոսական Իսպանիայի ժողովրդական բանակը, վորը հենված է լայն ժողովրդական զանգվածների վրա, կարող է նույնպիսի հերոսությամբ մինչև վերջը հասցնել Իսպանիայի դեմոկրատական ազատ կարգերի համար մղվող պայքարն ընդդեմ արյունարբու ֆաշիզմի:

## ՖՐԱՆՍԻԱՅԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՓՈՐՁԸ

Ֆրանսիան հանդիսանում է միասնական ճակատի հայրենիքը:

Ֆրանսիական կոմկուսը, ինչպես և Կոմինտերնի մյուս սեկցիաները, միշտ յեղել են բանվոր դասակարգի միասնության պաշտպանը, սակայն այդ ուղղությամբ արված բոլոր փորձերը մերժման եյին հանդիպում սոցիալիստական կուսակցության ղեկավարության կողմից:

Այն ինչ, 1933—1934 թվականներին Ֆրանսիայի բանվոր դասակարգի, աշխա-



տավորների և մանր բուրժուազիայի զգալի մասսաների տրամադրության մեջ տեղի ունեցավ մի բեկում, վորն ուժեղացրեց նրանց ձգտումը միասնության: Քաղաքական բոլոր ուղղություններին պատկանող ֆրանսիական պրոլետարիատի հզոր գործադուլներն ու վիթխարի ցույցերը, վորոնք տեղի ունեցան 1934 թվականի փետրվարի 9-ին և 12-ին և վորոնց աջակցություն ցույց տվին ծառայողների, ուսուցիչների, ինտելիգենցիայի զգալի մասսաները, հսկայական դեր խաղացին ֆաշիզմին հակահարված կազմակերպելու գործում: Փետրվարի 9-ի և 12-ի անցքերը մեծ ազդեցություն գործեցին տատանվող մանր բուրժուազիայի վրա և նրա զգալի մասը գրավեցին հակաֆաշիստական ճակատի կողմը: Միասնության ձգտումն ուժեղանում եր, և մասսաների այդ գրոհին չեր կարող այլևս դիմադրություն ցույց տալ նաև սոցիալիստական կուսակցության ղեկավարությունը:

Միաժամանակ, դարձյալ կոմկուսի նախաձեռնությամբ, ջանքեր գործադրվեցին միասնական պրոֆշարժում ստեղծելու համար, միաձուլելու համար այն զուգահեռ

միութիւնները, վորոնք հարում էյին աշ-
խատանքի ռեֆորմիստական Ընդհանուր
կոնֆեդերացիային ու աշխատանքի հեղա-
փոխական Ունիտար ընդհանուր կոնֆեդե-
րացիային, և, վերջապես, յերկու պրոֆ-
կենտրոնները միաձուլելու համար: Այդ
ջանքերը հաջողությամբ պսակվեցին և
1935 թվականի աշնան ու 1936 թվականի
սկզբներին Ֆրանսիական պրոֆմիություն-
ներն իրենց բոլոր ողակներով (սկսած
ստորիններից մինչև ղեկավար կենտրոնն-
րը) միասնական դարձան:

Միասնական պրոլետարական ճակատ
հիմք և նախադրյալ եր ավելի լայն ժողո-
վրդական ճակատի համար: Կոմկուսը մշ-
շակեց ժողովրդական ճակատի ծրագիրը
վորը, սոցիալիստների ու ռադիկալների
հետ մղված յերկարատև բանակցություն-
ներից հետո, 1936 թվականի հունվարին
ընդունվեց վերջնականապես:

1936 թվականի ապրիլի 26-ի և մայիս
3-ի ընտրություններին ժողովրդական ճա-
կատի կուսակցությունները*) փայլու

*) Ժողովրդական ճակատի մեջ մտնու
են՝ կոմունիստական կուսակցությունը



հաղթանակ տարան: Այդ ընտրությու
ներն անցան մասսաների մեծ ակտիվու
թյան պայմաններում, վորոնք համախմբ
վել էյին ժողովրդական ճակատի ծրագրո
առաջադրված պահանջների շուրջը և վճ
ռոշել էյին ֆաշիզմի առջև փակել ճանա
պարհը Ֆրանսիայում: Վորպես ընտրու
թյունների արդյունք, ժողովրդական ճա
կատի կուսակցությունները դերակշռո
մեծամասնություն ստացան պարլամեն-
տում՝ ժողովրդական ճակատի պատգամա
վորների թիվը կազմում է 381 (այդ թվի
72 կոմունիստ և 146 սոցիալիստ), ա
ինչ, ռեակցիոն-նացիոնալիստական ճակա
տըն ստացավ 237 տեղ:

Ընտրություններին ժողովրդական ճա
կատի տարած հաղթանակի հետևանք
յեղավ նոր կառավարության ստեղծում
սոցիալիստների ղեկավար Լեոն Բլյում
ղեկավորությամբ: Այդ կառավարությ
մեջ մտան ժողովրդական ճակատի նա

սոցիալիստական կուսակցությունը, ռա
դիկալների և ռադիկալ-սոցիալիստներ
կուսակցությունը և հանրապետական-ս
ցիալիստական միավորումը:

մյուս կուսակցությունների ներկայացուցիչները, բացի կոմունիստներից: Կոմունիստները հնարավոր չհամարեցին մտնել կառավարության կազմի մեջ, աննպատակահարմար գտնելով այդ, բայց խոստացան ակտիվ օժանդակություն ցույց տա ժողովրդական ճակատի կառավարությանը: Եվ այդ խոստումը նրանք կատարում են:

Ժողովրդական ճակատի հաղթանակը հսկայական վոգեվորություն առաջացրեց մասսաներում: Գործադուլների ալիքը, վորոնց հաճախ ուղեկցում եր գործարանային շենքերի գրավումը, հեղեղեց ամբողջ Ֆրանսիան: Պրոլետարիատի մասսայական պայքարը հարկադրեց պարլամենտին՝ ընդունել մի շարք սոցիալական օրենքներ, վորոնցից կարևորներն են՝ օրենք կոլեկտիվ պայմանագրերի մասին, հատուցվող արձակուրդների մասին, առանց աշխատավարձի կրճատման 40-ժամյա շաբաթի մասին, օրենք հանքագործների կենսաթոշակը բարձրացնելու մասին, մանր ծառայողների և հասարակական խոշոր ձեռնարկությունների ծառայողների դըրույքները բարձրացնելու մասին, օրենք



հացահատիկի վաճառումը կարգավորող բյուրո ստեղծելու մասին (վորպեսզի գյուղացիներն ազատվեն հավաքագնորդների ու սպեկուլյանտների կողոպուտից), օրենք մանր առևտրականներին վարկավորելու մասին և հօգուտ արհեստավորների ու մանր արդյունաբերողների կիրառվելիք մի քանի ձեռնարկումների մասին: Կարևորագույն նշանակություն ունեցավ Ֆրանսիական Բանկի՝ կառուցվածքը փոխելու վորոշումը՝ Ֆրանսիայի այդ կենտրոնական վարկային հիմնարկի, վորի մեջ իշխանությունը ժառանգաբար պատկանում եր մի քանի հարուստ ընտանիքներին, ինչպես և ռազմական արդյունաբերությունը պետականացնելու օրենքը և զինվորական մինիստրի շրջաբերականը զինվորների ռոճիկը զգալի չափով բարձրացնելու և նրանց նյութական պայմաններն ընդհանրապես բարելավելու մասին: Այդ բոլոր ձեռնարկումները, ինչպես և գործադուլային շարժման հաղթանակը, վորի հետևանքը յեղավ աշխատավարձի ընդհանուր բարձրացումը 10-15 տոկոսով, պայմանավորեցին մասսաների հեղափոխականացման հետագա վերելքը:

Այդ վերելքն արտահայտվեց նաև կոմկուսի արագ աճմամբ։ Դեռ մի քանի տարի առաջ, կոմկուսն ուներ ընդամենը 30 հազար անդամ։ 1936 թ. հուլիսին անդամների թիվը հասավ արդեն 185 հազարի, իսկ սեպտեմբերին՝ 280 հազարի։ Կոմյերիտմիությունը, վորը 1934 թվականի սկզբներին ուներ 3000 անդամ, 1936 թ. սեպտեմբերին ուներ 89 հազար անդամ։

Ֆրանսիայի որինակը ցույց է տալիս, վոր միանգամայն հնարավոր է և անհրաժեշտ է կոմունիստական ու սոցիալիստական կուսակցությունների գործողությունների միասնությունը և վոր միասնական պրոլետարական ճակատի հիման վրա հնարավոր է ստեղծել ֆաշիզմին զորեղ հարվածներ հասցնելու ընդունակ, ավելի լայն, ժողովրդական ճակատ։

Սակայն թեթևամտություն կլիներ կարծել, վոր այդ ճանապարհին դժվարություններ չկան՝ դրանք կան նաև Ֆրանսիայում, դրանք նույնիսկ աճում են։ «200 ընտանիքների» գլխավորած խոշոր կապիտալը, «ընտանիքներ», վորոնք վարժվել են դիտել իրենց, վորպես Ֆրանսիայի բուն տերերը, քայքայիչ աշխատանք



է կատարում։ Խոշոր կապիտալը սաբոտաժի յե յենթարկում ընդունված որենքները, խախտում է բանվորների հետ կնքած պայմանագրերը, բարձրացնում է ապրանքների գները, առ վոչինչ դարձնելով աշխատավարձի այն բարձրացումը, վորին հասել են բանվորները գործադուլների շնորհիվ։ Բլյումի կառավարությունը թույլ է պայքարում կապիտալիստների այդ բոլոր վոտնձգությունների դեմ, ինչպես և ձևականորեն լուծարքի յենթարկված, բայց բավականաչափ ակտիվ ֆաշիստական լիգաների դեմ։ Բլյումի կառավարությունը, փոխանակ հարուստներին հարկադրելու վճարել, ինչպես պահանջում է ժողովրդական ճակատի ժամանակին ընդունված ծրագիրը, դիմեց ֆրանկի դեվալվացիային (արժեքազրկմանը), վորը նվազեցնում է բանվորների ռեալ աշխատավարձը։ Վերջապես, կոմկուսի և յերկրի բոլոր բուն դեմոկրատիկ տարրերի առավելագույն առարկությանն է հանդիպում Իսպանիայի նկատմամբ կառավարության վարած քաղաքականությունը։ Այսպես կոչված չմիջամտելու այդ քաղաքականությունը, վորի նախաձեռնությունը պատկանում է

Բլյումի կառավարությանը, փաստորեն նշանակում է խրախուսել ֆաշիստական ինտերվենցիան և բլոկադի յենթարկել օրինական ճանապարհով ընտրված այն կառավարությունը, վորը պաշտպանում է հանրապետական Իսպանիայի ազատությունը:

Զնայած ժողովրդական ճակատի ծրագրի այդ բոլոր ծանր խախտումներին, կոմկուսը շարունակում է պաշտպանել Բլյումի կառավարությունը, չցանկանալով պառակտման վտանգին յենթարկել ժողովրդական ճակատը: Ֆաշիստական ռեակցիան վոչ մի ջանք չի խնայում Ֆրանսիայում ժողովրդական ճակատը վիժեցնելու և վարկաբեկելու համար: Կոմկուսը, վորի ազդեցությունն ու հեղինակությունն այնքան բարձրացան վերջին տարին, ամեն ջանք գործ է դնում, թույլ չտալու այդ վիժումն ու վարկաբեկումը, վորպեսզի ամրապնդի ժողովրդական ճակատը և կենսագործի նրա ծրագիրը Ֆրանսիայի և՛ արտաքին, և՛ ներքին քաղաքականության մեջ:



## ՀԱՆՈՒՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ՝ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՈՒ ՖԱՇԻԶՄԻ ԴԵՄ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Լեհաստանում կոմկուսը գտնվում է անլեգալ դրության մեջ: Սակայն այդտեղ ևս, ինչպես և այլ յերկրներում, նա նախաձեռնողն ու գլխավոր ուժն է հանդիսանում միասնական և ժողովրդական ճակատի շարժման մեջ:

Լեհաստանում աշխատավորների համերաշխության դրսևորման ամենահաճախակի ձևն են գործադուլները և նրանց զուգակցվող ցույցերը: Տեքստիլ բանվորների, մետաղագործների, տրամվայի բանվորների խոշոր գործադուլները կատարվում եյին բոլոր կուսակցությունների բանվորների ակտիվ մասնակցությամբ և շարժման մունիցիպալ ու պետական ծառայողների ներգրավմամբ: 1936 թվականի մարտ—ապրիլի Կրակովի ու Լվովի իրադարձությունները— հաճախակի ու ընդհանուր գործադուլների, բազմահազար հրապարակային ցույցերի այդ շղթան, վորոնք վերջացան վոստիկանության ու ժանդարմերիայի հետ տեղի ունեցած արյու-

նահեղ մարտերում — հանդիսացան բանվորների գործողությունների միասնության ցայտուն դրսևորումը: Նրանց միացան քաղաքային մանր բուրժուազիայի շոշափելի մասսաները: Դա մի շարժում էր, որը ցայտուն հակակառավարական և դրանով իսկ հակաֆաշիստական բնույթ ստացավ: Միասնական ճակատի մարմնացումն էր նաև մայիսի մեկի տոնակատարումը, որը կարծես հանդիսացավ Կրակովի ու Լվովի անցքերի շարունակությունը, միասնություն հաստատելու և ֆաշիզմի դեմ պայքարելու նույն այդ ձգտման ցուցադրումը: Այդ լավ հասկացավ բուրժուազիան:

Լեհաստանում դեռ իսկական ժողովրդական ճակատ չկա, պրոլետարական միասնական ճակատը դեռևս դուրս չի յեկել պատահական միահամուռ գործողությունների սահմաններից: Ժողովրդական ճակատում դեռևս ղեկավար կենտրոն չըկա, որից այնքան վախենում է պիլսուդչինան: Դա հենց այն խնդիրն է, որը ծառացած է Լեհաստանի կոմկուսի առջև և որը լուծելու համար նա հերոսաբար պայքար է մղում: Սակայն այդ շարժման



սաղմերը մենք արդեն ունենք: Ֆրանսիայի և Իսպանիայի օրինակով, մենք տեսնում ենք, թե ինչպես քաղաքական որոշ իրադրության պայմաններում այդ սաղմերն արագորեն վերածվում են հզոր, կազմակերպված շարժման:

Անգլիայում, նկատի ունենալով այն դերը, որը խաղում են այնտեղ բանվորական շարժման մեջ տրեդյունիոնները և լեյբորիստական կուսակցությունը, միասնական ճակատի յուրահատուկ ձևը կլիներ կոմկուսի մտնելը լեյբորիստական կուսակցության մեջ: Սակայն բուրժուազիայի հետ համագործակցելու այն տակտիկան, որը վաղուց ի վեր գործադրում է լեյբորիստական ղեկավարությունը, և որն ուղղակի հակադիր է միասնական ճակատի տակտիկային, ամենախոշոր խոչընդոտն է հանդիսանում անգլիական բանվորական շարժման շարքերում գործողությունների միասնության հասնելու ճանապարհին:

Անգլիայում, ինչպես և Լեհաստանում, մենք բավականաչափ օրինակներ ենք տեսնում, թե ինչպես լեյբորիստական, կոմունիստական, անկուսակցական, կազմակերպված ու անկազմակերպ բանվորներն

ու գործադուլները միահամուռ գործողությունների չեն դիմում գործադուլային շարժման մեջ, գործադուլների ցույցերում, ավարշավներում, հակաբանվորական օրենքների դեմ մղվող պայքարում (օրինակ՝ կարիքավորության ստուգման օրենքը)։ Բանվորական համերաշխության ցայտուն օրինակն էր բոլոր ուղղությունների պատկանող բանվորների վիթխարի ցույցը և մասսայական ելույթները, անգլիական Հիտլեր դառնալու թեկնածու Մոսլիի փորձերի դեմ՝ 1936 թ. աշնանը ֆաշիստական հակասեմիտական ցույց սարքել Լոնդոնի Իստենդ թաղամասում, որտեղ բնակվում են հրյա բանվորներն ու արհեստավորները։

Տեղյակ լինելով բանվորների տրամադրություններին, գիտենալով, որ Ֆրանսիայում ու Իսպանիայում ժողովրդական ճակատի ձեռք բերած հաղթանակը լայն արձագանք գտավ Անգլիայում, տրեդյունիոնների և լեյբորիստական կուսակցության պարագլուխների մի մասը, դեռ շատ առաջ, քան լուծվեց լեյբորիստական կուսակցության մեջ կոմկուսի մտնելու հարցն այդ երկու կազմակերպություննե-



րի համագումարներում, իր մամուլում գրպարտության ու հարձակումների կամպանիա սկսեց անգլիական կոմկուսի և ԽՍՀՄ-ի դեմ։ Այդ նպատակով լեյբորիստական կուսակցության կենտրոնական օրգան «Դեյլի Հերալդը» իր ընթերցողներին հրամցնում էր ամենաթունավոր ու նողկալի էջեր Վալտեր Սիտրինի գրքից, որտեղ անգլիական տրեդյունիոնների այդ ամենառեակցիոն «առաջնորդը» և բրիտանական իմպերիալիզմի հավատարիմ ծառան զրպարտում է Խորհրդային Միության մեջ իր կատարած ուղևորությունից ստացած «տպավորությունները»։ Այնուհանդերձ, չնայած այդ չարամիտ կամպանիային, հանքագործների կես միլիոնից բաղկացած ֆեդերացիան և հարյուրավոր պրոֆմիութենական կազմակերպություններն արտահայտվեցին հօգուտ կոմկուսի ընդունմանը լեյբորիստական կուսակցության կազմի մեջ։ Այնուամենայնիվ, լեյբորիստական կուսակցության տարեկան կոնֆերանսում, որը տեղի ունեցավ 1936 թ. հոկտեմբերի սկզբներին, Եդինբուրգում, հօգուտ կոմկուսի ընդունման արտահայտվեց պատվիրակների մոտ քառորդ մասը։

Անգլիայի մեր յեղբայրական կոմկուսը մեծ, համառ աշխատանք է կատարել և կատարում է, վորպեսզի այնուամենայնիվ, հակառակ բոլոր դժվարությունների, իրականացնի միասնական ճակատը: Պետք է նշել, վոր կոմկուսի ազդեցությունը գնալով աճում է՝ մի քանի ամսում կոմկուսի անդամների թիվն ավելացավ 4 հազար հոգով, այժմ կուսակցությունն ունի ավելի քան 11 հազար անդամ: Արագորեն աճում է կոմկուսի կենտրոնական որգան «Դեյլի Ուորկեր»-ի տիրաժը:

Վորպես հետևանք կոմկուսի համառ աշխատանքի և ֆաշիզմի ու պատերազմի դեմ պայքարելու միասնական ճակատի նըկատմամբ բանվորական մասսաների ցույց տված հսկայական ճնշման, Լոնդոնում հունվարի 17-ին (ՏԱՍՍ-ի հաղորդագրությամբ հունվարի 19-ին) համաձայնություն կայացվեց կոմունիստական կուսակցության, սոցիալիստական լիգայի և անկախ բանվորական կուսակցության միջև՝ գործողությունների միասնության շուրջը: Այդ կազմակերպությունների անունից հրապարակված մանիֆեստում ասված է, վոր համաձայնությունը կնքվել է «հաս-



տատելու բանվորական շարժման բոլոր կազմակերպությունների միասնությունը՝ ֆաշիզմի, ռեակցիայի ու պատերազմի վըտանգի դեմ մղվող պայքարում, ազգային կառավարության դեմ մղվող պայքարում»:

Մանիֆեստը բանվոր դասակարգին կոչ է անում «մոբիլիզացիայի յենթարկել իր բոլոր ուժերը՝ առավելագույն գործունակ պայքար մղելու ֆաշիստական ագրեսիայի հարաճուն վտանգի դեմ և պայմանագիր կնքելու համար Անգլիայի, Խորհրդային Միության, Ֆրանսիայի ու մյուս բոլոր յերկրների միջև, վորտեղ բանվոր դասակարգը քաղաքական ազատություն է վայելում»:

Մանիֆեստում մատնանշված են բանվոր դասակարգի մի շարք այն անմիջական պահանջները (վերացնել բանվորների կարիքավորության ստուգումը, մտցնել հատուցվող արձակուրդ, բարձրացնել աշխատավարձի դրույքները և այլն), վորոնք անհրաժեշտ է պաշտպանել միահամուռ գործողություններով:

Այդ բոլորը վկայում է, վոր Անգլիա-

յում հանուն միասնական ճակատի մղվող պայքարը լայն հեռանկարներ ունի:

---

Վոչ յեվրոպական յերկրներից համառոտակի կանգ առնենք յերեք խոշորագույններին՝ ԱՄՆ-ի, Չինաստանի ու Ճապոնիայի վրա:

ԱՄՆ-ում մենք ականատես ենք պրոլետարական մասսաների քաղաքական զարթոնքին, մասսաներ, վորոնք յերկար տասնամյակներ գերի եյին բուրժուական կուսակցությունների ձեռքին: Նոր բնույթ ստացավ գործադուլային շարժումը: Համերաշխության գործադուլները, վորոնք առաջ սակավադեպ եյին ԱՄՆ-ում, ինչպես և ընդհանուր գործադուլները, սովորական յերևույթ են դառնում: Ի պաշտպանություն և ի ոժանդակություն գործադուլավորների, հաճախ հանդես են գալիս քաղաքային մանր բուրժուազիան և ֆերմերները: Գործադուլները գնալով ավելի հաճախակի ցայտուն քաղաքական բնույթ են ընդունում: Նույնիսկ աշխատանքի Ամերիկյան Ֆեդերացիայի մեջ (վորը գաղափարականորեն ու կազմակերպչորեն ներկայացնում ե ամերիկյան պրոլետարիատի



առավելապես վորակյալ վերնախավերի շահերը) տեղի յե ունենում խմորում, ինչ վոր նոր վոգի յե փչում: Արտադրական պրոֆմիությունների կազմակերպման Կոմիտեն, վորն առաջ ե յեկել աշխատանքի Ամերիկյան Ֆեդերացիայի ընդերքում և վորին հետապնդում են ցեխովշչինայի կողմնակիցները, իր առջև նպատակ ե դրել ներգրավել պրոֆշարժմանը վոչ վորակյալ բանվորների այն միլիոնավոր մասսաներին, վորոնք աշխատում են այսպես կոչված մասսայական ինդուստրիայում (պողպատի, ցեմենտի, ավտոմոբիլի, ռետինի ճյուղերում): Շերտավորում ե կատարվում սոցիալիստական կուսակցության մեջ. այդտեղ գնալով ավելի յե ուժեղանում նրա ձախ թևը, վորն արտահայտվում ե հոգուտ միասնական ճակատի կոմունիստների հետ և վորն ընդմին հանդիպում ե սոցիալիստական կուսակցության ցենտրիստական ղեկավարության, յեթե վոչ բացահայտ, գեթ վորոշ չափով քողարկված դիմադրության: Հին կազմակերպությունների հետ միասին, առաջ են գալիս բազմաթիվ նոր կազմակերպություններ, վորոնք ձգտումն են ցույց տա-

լիս դեպի միահամուռ գործողություններ, դեպի համերաշխություն, դեպի միասնական ճակատ:

Աճող ֆաշիստական տենդենցները, վերջին յերկու տարում մի քանի տասնյակ ֆաշիստական ու կիսաֆաշիստական լիգաների, լեգիոնների, ասոցիացիաների առաջ գալը զանազան նահանգներում, մասսայական, չափազանց դանդաղորեն կրճատվող գործազրկությունը, (չնայած արտադրության արագ աճման), միլիոնավոր վոչ վորակյալ բանվորների ու մանր ֆերմերների կյանքի ցածր մակարդակը և անապահով դրությունը—այդ բոլորը դրդում է մասսաներին՝ յելք գտնել ընդհանուր, լայն յելույթներում, միահամուռ գործողություններում, այդ բոլորն ուժեղացնում է ձգտումը դեպի միասնական բանվորական ու ժողովրդական ճակատը:

ԱՄՆ-ի կոմկուսի առջև պատմական խնդիր է ծառացած՝ գոյություն ունեցող մասսայական կազմակերպություններից (ինչպիսիք են պրոֆմիությունները), բանվոր դասակարգի հին քաղաքական կուսակցություններից (կոմկուսից, սոցիալիստական կուսակցությունից), բանվոր-



ների, ֆերմերների ու գործազուրկների ամբողջ յերկրում ցիրուցան, անջատ, թույլ ձևավորված կազմակերպություններից ստեղծել ազգային բանվորական-ֆերմերական մի կուսակցություն, վորը «հանդիսանա մասսայական ժողովրդական ճակատի յուրատեսակ ձևը Ամերիկայում» (ԴԻՄԻՏՐՈՎ): Այդ կնշանակեր ուժերի նոր դասավորում Ամերիկայի ամբողջ քաղաքական կյանքում:

Ճապոնական իմպերիալիզմի ահա արդեն հինգ տարի շարունակվող ագրեսիան Չինաստանում, Մանջուրիայի, Ժեհեյի, Չախարի և Հյուսիսային նահանգների հափշտակումը, Սույուան նահանգում տեղի ունեցող պայքարը, Չինաստանում նորանոր հափշտակումների, անդամահատման նախապատրաստումը ստեղծեցին մի նոր իրադրություն, վորը չին ժողովրդի առջև կենսականորեն անհետաձգելի խնդիր է դնում՝ փրկել յերկիրը ճապոնական հափշտակիչներից: Այդ պահանջում է ստեղծել միասնական ազգային ճակատ ընդդեմ ճապոնական իմպերիալիզմի:

Չինական կոմկուսի կենտկոմը և կենտրոնական խորհրդային կառավարությու-

նը, Հաշվի առնելով այդ նոր իրադրությունը, դեռ 1935 թվականի օգոստոսին մի դիմում ուղղեցին ամբողջ չին ժողովրդին, կոչ անելով նրան, դիմադրություն ցույց տալ ճապոնիային և փրկել հայրենիքը: Տվյալ պայմաններում գլխավոր թշնամին յե հայտարարվում ճապոնական իմպերիալիզմը: Ամբողջ չին ժողովըրդին կոչ է արվում զինված պայքար մղել ագրեսորի դեմ:

1936 թ. օգոստոսին Չինաստանի կոմկուսի Կենտկոմը, Գոմինդանի Կենտգործկոմին ուղղած իր բաց նամակում, կրկին ու կրկին առաջարկեց վերջ տալ Չինաստանի ներքին ազգամիջյան պատերազմին և ստեղծել հակաճապոնական միասնական ճակատ: Կոմկուսի այդ հաստատուն ցանկությունը կրկնեց Չինաստանի կենտրոնական խորհրդային կառավարության ներկայացուցիչ Մաո—Ցզե-դունը անգլիական ժուռնալիստ Եդգար Սնոույի հետ իր ունեցած զրույցում (1936 թ. սեպտեմբեր), վորը հրապարակվել եր Շանհայի «Չայնա ուիկլի ռեվյու» շաբաթաթերթում (նոյեմբերի 14-ի և 21-ի համարներում):

Չին ժողովրդի կենտրոնական խնդիրն է՝



ստեղծել միասնական հակաճապոնական բանակ և ազգային պաշտպանության համաչինական կառավարություն: Չինաստանի խորհրդային շրջանների կառավարությունը կմտներ այդպիսի միասնական կառավարության կազմի մեջ, խորհրդային շըրջանները կդառնային միասնական դեմոկրատիկ հանրապետության բաղկացուցիչ մասը, իսկ Կարմիր Բանակը կմտներ միասնական ազգային բանակի կազմի մեջ, յենթարկվելով ընդհանուր հրամանատարությանը և մարտնչելով ճապոնական իմպերիալիստների դեմ՝ ռազմաճակատի նըրան հատկացված վորոշ մասերում: Սրանք են կոմկուսի առաջարկները: Դրանք իրականացնելու առաջին նախադրյալն է՝ դադարեցնել Նանկինի պայքարը չինական Կարմիր Բանակի դեմ: Վերջինս ել իր կողմից գործադրում է ամեն ջանք՝ դադարեցնելու ռազմական գործողությունները Նանկինյան կամ չինական այլ զորքերի դեմ և հարվածով է պատասխանում միմիայն նրա վրա հարձակվելու դեպքում:

Ճապոնական ագրեսիան այժմ հարվածում է վոչ միայն աշխատավորներին, այլև չինական բուրժուազիային:

Ուստի չինական բուրժուազիայի մեջ աճում է դիմադրություն ցույց տալու ձգտում, վորը համակում է նաև հասարակության մյուս խավերին և թափանցում է գոմինդանական բանակի հրամկազմի մեջ և նույնիսկ գոմինդանական վերնախավի մի քանի շրջանները: Ուստի ազգային բուրժուազիայի մի մասը սկսեց դառնալ դեպի միասնական հակաճապոնական ճակատը:

Հենց նույն պատճառներով այնքան լայն զարգացավ ուսանողական ազգային շարժումը: Չնայած բոլոր հալածանքներին, այդ շարժումը ժամանակավորապես նահանջելով, ավելի ու ավելի յե լայնանում, միաձուլվելով ու միահյուսվելով բանվորական գործադուլային շարժման և բանվորական ցույցերի հետ: Հանկոույում, Ուչանում և Խանյանում հարյուր հազարավոր բանվորներ ոժանդակեցին հազարավոր ուսանողների ցույցին: Շանհայում, Կանտոնում ուսանողական շարժմանը միացան յերկաթուղայինները և փոստի աշխատողները:

Մի քանի գոմինդանական պրոֆմիություններ բաց թողին մի դիմում, պահան-



ջելով պայքար մղել հանուն Չինաստանի փրկության: Աշխատանքի համաչինական ֆեդերացիան բոլոր ուղղությունների պատկանող բանվորներին դիմեց մի կոչով՝ ակտիվ պայքար մղել Ճապոնիայի դեմ:

Այդ շարժումը չի կարելի վոչնչացնել, վորովհետև նա արտահայտում է չին ժողովրդի ամենալայն մասսաների տրամադրությունները, իղձերն ու շահերը:

Նշանակալից է այն փաստը, վոր գոմինդանի մի քանի տեղական կազմակերպություններ արդեն սկսել են հարել միասնական հակաճապոնական ճակատին, գործելով կոմունիստների և մյուս քաղաքական կազմակերպությունների կողմնակիցների հետ: Ավելի ևս բնորոշ է այն փաստը, վոր Մանջուրիայում, Ժեխեյում կոմունիստները և գոմինդանականները, ուս–ուսի տված, պարտիզանական պայքար են մղում ճապոնական հափշտակիչների դեմ:

Վերջապես, Սիանիի վերջին անցուդարձերը ցույց տվին ազգային շարժման ամբողջ ուժը, վորի հանդեպ պետք է տեղի տար Չժան Սուե-լյանը և վորը (ազգային շարժումը) գնալով ավելի ու ավելի հաշվի

յե առնելու Չան-Կայ-Շիի գլխավորած նանկինյան կառավարությունը: Ավելորդ է ասել, որ չին կոմունիստները, որպես չին ժողովրդի բոլոր կուսակցությունների ու զորքերի միասնական հակաճապոնական ազգային ճակատի նախաձեռնողներն ու իսկական կողմնակիցները, վճռաբար պաշտպանում եյին այդ կոնֆլիկտի խաղաղ լուծումը, ձգելով թույլ չտալ, որ նոր ազգամիջյան պատերազմ բռնկի:

Այդ բոլորը ցույց է տալիս, թե որքան մշակված է հողը համազգային հակաճապոնական ճակատ ստեղծելու համար: Սակայն գոմինդանի վերնախավերում դեռ գերակշռում են տատանումներն ու յերկյուղը կոմունիստների հետ միասնական ճակատ հաստատելու առջև: Այդ վերնախավերում կան մարդիկ, վորոնք իրենց հաշիվները կապում են նորանոր զիջումների գնով Ճապոնիայի հետ համաձայնության գալու գործին: Դա գլխավոր խոչընդոտն է, որ արգելակում է Չինաստանի փրկության համար այնքան անհրաժեշտ համազգային հակաճապոնական ճակատի կազմակերպումը:

---



Յեթե Չինաստանում ժողովրդական ճակատի տվյալ պայմաններում չի կարող լինել այլ բան, քան հակաճապոնական ճակատ, ապա հենց ՃԱՊՈՆԻԱՅՈՒՄ հասունանում են ժողովրդական հակաֆաշիստական ճակատ ստեղծելու ուժերը: Մանջուրիան օկուպացիայի յենթարկելուց հետո, մի քանի տարվա ընթացքում Ճապոնիայում տեղի ունեցավ քաղաքական տրամադրությունների նկատելի սահմանազատում, գլխավորապես մանր բուրժուազիայի մեջ, ընդգրկելով նաև բանվոր դասակարգի մի քանի խավերը: Մի կողմից ուժեղանում եյին հեղափոխական տրամադրությունները բանվոր դասակարգի ու առաջավոր գյուղացիության մեջ և ինտելիգենցիայի վորոշ խավերում (ուսանողության, ուսուցչության, պրոֆեսուրայի մեջ), մյուս կողմից մանր բուրժուազիայի և ինտելիգենցիայի զգալի մասսաներն ավելի ու ավելի եյին վարակվում շովինիզմով և ներգրավվում եյին ֆաշիստների ու ֆաշիզացողների բանակը: Սակայն քանի ավելանում է հարկերի ծանրությունը՝ անչափ աճող ռազմական ծախսերի պատճառով, քանի ավելի հողս են ցնդում Մանջուրիայի ու

հյուսիսային Չինաստանի օկուպացիայի հետ կապված պատրանքները Չինաստանի հափշտակված նահանգներում ստեղծվող «դրախտի» մասին (պատրանքներ, որոնք սերմանում էր մասսաներում զինվորականության կողմից լավ կազմակերպված և Սյակայ տայյուտոյի*) աջ լիդերների կողմից օժանդակություն գտնող դեմագոգիկ կամպանիան),—ուժեղանում են հակապատերազմական, հակաֆաշիստական տրամադրությունները, աճում է այն գիտակցությունը, թե անհրաժեշտ է պայքար մղել ռեակցիայի ու ֆաշիզմի ուժերի դեմ, որոնք ծծում են աշխատավոր մասսաների հյութերը և դեպի կործանարար արկածներն են տանում յերկիրը:

Պարլամենտի 1936 թվականի փետրվարի ընտրություններն ըստ եյության մի ցույց եյին լայն մասսաների հակաֆաշիստական

---

*) Մասսայական կազմակերպություն Անգլիայի լեյբորիստական կուսակցության տիպով, անհատական և կոլեկտիվ անդամագրությամբ (պրոֆմիութենական և գյուղացիական կազմակերպություններ): Ունի ավելի քան 300 հազար անդամ:



տրամադրությունների: Նույնիսկ Սյակայ տայյուտոյի աջ պարագլուխները, որոնք սովորաբար խուսափում են Ճապոնիայում գոյություն ունեցող ֆաշիստական վտանգի մասին խոսելուց, մասսաների ճնշմամբ, ընտրողներին ուղղված իրենց դիմումի մեջ կոչ եյին անում «դիմադրություն ցույց տալ ֆաշիստ ուժերին»: Հինգ միլիոն ընտրողներ իրենց ձայնը տվին այն կուսակցություններին, որոնք խոստանում եյին պայքար մղել ֆաշիզմի և ռազմական ծախսերի ավելացման դեմ: Ուղղակի ֆաշիզմը պաշտպանող թեկնածուները ստացան ընդամենը 130 հազար ձայն: Ընտրություններին մեծ հաջողություն ունեցավ բանվորագյուղացիական ճակատը, որը նոր պարլամենտում ստացավ 23 տեղ՝ նախկին հինգ տեղի փոխարեն: Ընտրությունների արդյունքը ցայտուն կերպով դրսեվորեցին մասսաների հակաֆաշիստական տրամադրությունները և նոր մղում տվին ժողովրդական հակաֆաշիստական ճակատի ձեվավորմանը:

Ճապոնական կոմկուսը գտնվում է խորն ընդհատակում: Որպես ֆաշիզմի դեմ պայքարելու նախաձեռնող հանդես յեկավ

նոր ձախ բանվորագյուղացիական «Ռոնո մուսան խիոգիկայ» ասոցիացիան, որին գլխավորում է ձախ սոցիալիստ Կատո Կանձյուն: Այդ ասոցիացիան բանվորագյուղացիական կազմակերպություններին ուղղած իր դիմումի մեջ, որ հրապարակվեց 1936 թ. հունիսին, իր առջև խնդիր է դնում՝ «ստեղծել Ճապոնիայում ամենալայն հակաֆաշիստական ժողովրդական ճակատ բանվորների, գյուղացիների ու աշխատավորների միասնական դասակարգային լոզունգներով... «Ռոնո մուսանը» համաձայն է գործակցելու և նույնիսկ միաձուլվելու Սյակայ տայսյուտոյի հետ, յեթե վերջինս բանա իր դռներն ամբողջ յերկրի բոլոր պրոլետարական կազմակերպությունների առջև»: Այդ դիմումը կենդանի արձագանք գտավ լայն մասսաներում: Միասնական բանվորական և ժողովրդական հակաֆաշիստական ճակատ ստեղծելու հարցը պրոֆմիությունների ուշադրության կենտրոնը դարձավ Օսակայում, Կիոտոյում, Կոբեյում և Կանսայ մարզի պրոֆմիությունների համագումարում, որի նիստերը տեղի եյին ունենում հուլիսի յերկրորդ կեսերին: Վերոհիշյալ բոլոր կազմակերպու-



թյունները, ինչպես և Տոկիոյի տրանսպորտի ու տրամվայի բանվորների պրոֆմիությունների խորհրդակցությունը, որը տեղի ունեցավ օգոստոսի սկզբներին, պաշտպանեցին «Ռոնո մուսանի» պահանջը՝ «լայնորեն բանալ տայսյուտոյի դռները բոլոր բանվորական կազմակերպությունների առջև»: Բայց ինչպես որ Անգլիայում լեյբորիստական առաջնորդները վախենում են կոմունիստներից, այնպես էլ Սյակայ տայսյուտոյի ռեակցիոն պարագլուխները վախենում են բանալ իրենց կազմակերպության դռները մասսաների առջև՝ չէ՞ որ այնտեղ կարող եյին մտնել ձախերը և նույնիսկ կոմունիստները: Հենց դրա մասին է խոսում թեթևակի քողարկված ձևով Սյակայ տայսյուտոյի կենտկոմի այն որոշումը, որը մերժեց ընդունել «Ռոնո մուսանի» առաջարկը: Սակայն տայսյուտոյի հենց ղեկավարության մեջ բյուրեղանում է մի խմբավորում, որը կողմնակից է միասնական և ժողովրդական ճակատ կազմելուն:

Գնալով ավելի յե պարզվում, որ հանուն բանվորական ու ժողովրդական ճակատի ծավալվող շարժումը նույնիսկ իր

ներկա սկզբնական ստադիանում արդեն իր վրա յե գրավել լայն խավերի ուշադրությունը, իսկ իր հետագա զարգացմամբ պետք ե հսկայական նշանակություն ստանա ֆաշիզմի ու պատերազմական վտանգի դեմ մղվող պայքարում:

---

Հիմնականում այսպիսի վիճակի մեջ ե միասնական բանվորական և ժողովրդական ճակատի համար ծավալվող շարժումը մի շարք յերկրներում: Շարժման մակարդակն ու ձևերը շատ տարբեր են զանազան յերկրներում: Համապատասխանորեն տարբեր և յուրատեսակ են նաև պայքարի մեթոդները, տակտիկական այն լոզունգները, վորոնք մոտեցնում են մասսաներին այդ պատմական խնդրի լուծմանը: Սակայն մի մեթոդ ընդհանուր ե բոլոր յերկրների համար, այդ մեթոդն ե՝ յերկու քաղաքական գծերի հակադրումը, վորոնք տրամագծորեն հակառակ արդյունքներ են տալիս 1) բուրժուազիայի հետ համագործակցելու և բանվոր դասակարգի պառակտման քաղաքականություն, վորը գործադրում եր գերմանական ու ավստրիական սոցիալ-դեմոկրատիան,



մի քաղաքականություն, վորը ժամանակավոր հաղթանակ բերեց ֆաշիզմին այդ յերկրներում, վորն անթիվ աղետներ ու տառապանքներ բերեց աշխատավորներին և ընդհուպ մոտեցրեց նոր համաշխարհային սպանդի վտանգը, 2) բանվորների, գյուղացիների և բոլոր աշխատավորների միացման ու համախմբման քաղաքականությունը՝ ֆաշիզմի ու պատերազմի դեմ պայքարելու համար:

ԽՍՀՄ-ի աշխատավորները, բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ, ժողովուրդների հանճարեղ առաջնորդ ընկ. Ստալինի ղեկավարությամբ, ստեղծեցին աշխարհիս առաջին սոցիալիստական պետությունը, վորտեղ չկան շահագործողներ, վորտեղ չկա ստրկական աշխատանք, չկան ճգնաժամեր, չկա գործազրկություն, մի պետություն, վորտեղ—ինչպես հրավառ տառերով գրված ե Նոր ստալինյան Սահմանադրության մեջ—բոլոր քաղաքացիների համար ապահովված ե աշխատանքը, հանգիստը, կրթությունը, վորտեղ ապահովված ե վոչ մի տեղ չտեսնված և միմիայն սոցիալիզմի յերկրում հնարավոր իսկական սոցիալիստական դեմոկրատիան բոլոր

քաղաքացիների համար: Մասսաների կյանքով, փորձով ստուգված այդ յերկու քաղաքական գծերի հակադրումը (բուրժուազիայի հետ համագործակցելու և ռեակցիայի, ֆաշիզմի ու պատերազմի վտանգի դեմ պայքարելու համար աշխատավորներին համախմբելու գիծը), համոզելու և վողեվորելու յե բոլոր յերկրների բանվորներին՝ միասնական բանվորական և ժողովրդական ճակատի համար նրանց մղած պայքարում:



# ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿԱՆՔ ՄԱՅԻՍԻ 1-Ի ՄԱՍԻՆ

Մայիսմեկյան տոնը պրոլետարիատի հեղափոխական ուժերի մարտական ինտերնացիոնալ ստուգատեսն է: Այդ օրն ունի իր պանծալի հեղափոխական պատմությունը:

1889 թ. հուլիսին Փարիզում, Յերկրորդ Ինտերնացիոնալի առաջին կոնգրեսին, մի բանաձև ընդունվեց, վոր ամեն տարի մայիսի 1-ի օրն անցկացվի միջազգային բանվորական ցույց, պահանջելով ութժամյա աշխատանքային օր: Բանաձևում ասված է՝ «Նշանակվում է մեծ միջազգային ցույց՝ միանգամ ընդմիշտ սահմանված ամսաթվին, այնպես վոր միանգամից բոլոր յերկրներում ու բոլոր քաղաքներում, սահմանված միևնույն օրը, աշխատավորները հասարակական իշխանություն-

ներին պահանջներ ներկայացնեն՝ օրենքով սահմանափակել աշխատանքային օրը մինչև 8-ը ժամով, ինչպես և կատարել Փարիզի միջազգային կոնգրեսի մյուս բոլոր վորոշումները...

Զանազան ազգերի աշխատավորներն այդ ցույցը կազմակերպում են այնպես, ինչպես կթելադրեն իրենց յերկրի պայմանները ...»:

Բուրժուազիան շատ շուտ գնահատեց այդ միջազգային պրոլետարական ուժի հեղափոխական նշանակությունը: Արդեն 1890 թվականին Վիեննայի փողոցներում ցուցարարների դեմ կանգնեցրին վոստիկանության ու զորքերի զինված ջոկատներ: Բյալա քաղաքում (Ավստրիական Սիլեզիա) վոստիկանությունը կրակեց ցուցարարների վրա: Կային շատ վիրավորներ ու սպանվածներ:

Ցուցարարների դեմ զինված ուժեր հանեցին Մադրիդում, Բեռլինում, Փարիզում, Հռոմում, Վիեննայում: Սակայն այդ ամբողջ նախապատրաստությունը չվիժեցրեց մայիսի 1-ի տոնակատարումը: Այդ որն իրոք միջազգային պրոլետարական համերաշխության որ եր:



1891 թվականի մայիսի 1-ը նույնպես նշվեց արյունահեղ ընդհարումներով բանվորների և բուրժուազիայի վարձկան ջոկատների միջև: Ֆրանսիայում կար 19 սպանված, Իտալիայում՝ 5: Զոհեր կային նաև այլ յերկրներում: Մայիսմեկյան դրոշները ներկվել եյին բանվորական արյունով:

Այդ ժամանակից ի վեր, մայիսմեկյան տոների օրերին, բուրժուազիան մոբիլիզացիայի յե յենթարկում իր ամբողջ ռազմական-վոստիկանական պետական մեքենան, ընդդեմ բանվոր դասակարգի և նրա հեղափոխական կազմակերպությունների:

Յերկրորդ Ինտերնացիոնալը, վորը բուրժուազիայի հետ համաձայնության գալու գիծ եր բռնել, հենց սկզբից աշխատում եր վոչնչացնել մայիսմեկյան ցույցերի հեղափոխական բովանդակությունը:

Յերկրորդ Ինտերնացիոնալի յերկրորդ կոնգրեսում՝ 1891 թվականին, ընդունվեց առաջին կոնգրեսի վորոշումը թուլացնող մի բանաձև՝

«Մայիսի մեկը հանդիսանում է բոլոր յերկրների բանվորների ընդհանուր տոն և այդ որը բանվորները ցուցադրում են ի-

րենց պահանջների և համերաշխության ընդհանրությունը: Այդ տոնին պետք է ուղեկցի աշխատանքի դադարեցումը, ինչ չափով վոր տվյալ յերկրի պայմանները անհնարին չեն դարձնում այդ:

Հետագայում Յերկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստները փորձում եյին հեղափոխական պայքարի օրը՝ մայիսի 1-ը, դարձնել ամեն տարվա զվարճացուցիչ ծես և զբոսանքներ: Գերմանիայում սոցիալ-դեմոկրատիան մայիսի 1-ը փոխադրում եր առաջիկա կիրակի օրվան և նրան տալիս եր հասարակ ժողովրդական զբոսանքի բնույթ՝ նվագածությամբ: Մի քանի այլ յերկրներում օպորտունիստներն աշխատում եյին մայիսի 1-ը նշել աշխատանքը վերջանալուց հետո:

Չնայած Յերկրորդ Ինտերնացիոնալի օպորտունիստական գծին, պրոլետարիատն ամեն տարի մայիսի 1-ի օրը ավելի ու ավելի լայն եր տարածում միջազգային պրոլետարիատի համերաշխության գաղափարը: Մայիսմեկյան ցույցերը դառնում են պրոլետարիատի մարտական յելույթներ՝ ուղղված տիրապետող դասակարգի՝ կապիտալիստների դեմ:



Ռուսաստանում մայիսի 1-ն առաջին անգամ նշվեց 1890 թվականին Վարշավայում տեղի ունեցած գործադուլով: Այդ գործադուլին մասնակցում եր մոտ 10 հազար հոգի:

1891 թվականին կազմակերպվեց առաջին մայովկան Պետերբուրգում:

Մոսկվայում առաջին մայովկան անցկացվեց 1895 թվականին: Նրան մասնակցում եր 250 հոգի:

1896 թվականին Պետերբուրգում հրատարակվեց մայիսմեկյան թռուցիկ, վորը գրել եր Լենինը բանտում: Նրանում ասված ե՝

«Ժամանակն ե, վոր մենք ել՝ ռուս բանվորներս, պատռենք այն շղթան, վորով կապկպել են մեզ կապիտալիստներն ու կառավարությունը, վորպեսզի ճնշման տակ պահեն. Ժամանակն ե, վոր մենք ել միանանք մեր յեղբայրների՝ այլ պետությունների բանվորների պայքարին, կանգնենք նրանց հետ այն ընդհանուր դրոշի տակ, վորի վրա գրված ե՝ «Բանվորնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք»:

Մայիսի 1-ի օրվա նկատմամբ չափազանց ցայտուն կերպով դրսեվորվեց այն ամբողջ

ներհակությունը, վորը գոյություն ուներ Յերկրորդ Ինտերնացիոնալի ոպորտունիստական գծի և ԼԵՆԻՆԻ ստեղծած ու ղեկավարած բոլշևիզմի հեղափոխական գծի միջև:

Ռուսաստանում մայիսի 1-ը, վորը տոնվում եր բոլշևիկների ղեկավարությամբ, միշտ հեղափոխական բնույթ եր կրում:

Մայիսմեկյան օրերին տեղի յեն ունենում մասսայական ընդհարումներ բանվորների ու վոստիկանության, ժանդարմերիայի և մայիսի 1-ի օրը մոբիլիզացիայի յենթարկված զինված ուժի միջև: Բուրժուազիան անողոքաբար դատաստան է տեսնում ցուցարարների հետ: Կատարվում են մասսայական ձերբակալություններ: Սովորական յերևույթ դարձած գործադուլները մայիսի 1-ին սկսում են աստիճանաբար վերածվել մասսայական-քաղաքական յելույթների:

1901 թվականին մայիսմեկյան ցույցերն ավելի վիթխարի չափ են ընդունում: Պետերբուրգում և Թիֆլիսում տեղի ունեցան առանձնապես խոշոր իրադարձություններ:

Պետերբուրգում գործադուլ եյին արել



Պուտիլովի, Օբուխովի, Նևայի և այլ գործարանների բանվորները: Օբուխովի գործարանում մայիս 1-ի տոնակատարումը վերջացավ բարիկադային կռվով: Այդ օրը Թիֆլիսում անցկացվեց մասսայական մարտական յելույթ: Բանվորները կրում եյին կարմիր դրոշներ, Մարքսի ու Ենգելսի պատկերները: Կազմակերպիչն եր ընկեր ՍՏԱԼԻՆԸ: Ցույցից հետո ընկեր ՍՏԱԼԻՆԸ ձերբակալվեց և ապա հարկադրված յեղավ անցնելու մշտական անլեգալ վիճակի:

Ռուսաստանում տարեց-տարի ավելանում է մայիսի 1-ը տոնող քաղաքների թիվը: 1902 թվականին մայիսի 1-ը տոնվեց 36 քաղաքում, 1903 թվականին՝ 63, 1904 թվականին՝ 126 քաղաքներում ու գյուղաքաղաքներում: Մասսաների հեղափոխական շարժումն աճում է, չնայած այն դաժան դատաստանին ու ջարդերին, վորոնք կազմակերպում է ցարական կառավարությունը: 1905 թվականին մայիսի 1-ի տոնակատարումը Ռուսաստանում անցավ ծավալվող հեղափոխության պայմաններում, զինված ապստամբության նախապատրաստվելու նշանաբանով:

1905 թվականին Ռուսաստանում մայիս-

մեկյան ցույցին մասնակցում եյին հարյուր հազարավոր բանվորներ ու աշխատավորներ, ընդ վորում մայիսի 1-ը առաջին անգամ տոնվեց շատ գյուղերում:

Վիթխարի դասակարգային մարտերում, ԼԵՆԻՆԻ ղեկավարած բոլշևիկյան կուսակցությունը կարողացավ գլխավորել մասսաների հեղափոխական պայքարը և համախմբում եր նրանց իր լոզունգների շուրջը· Բոլշևիկյան կուսակցությունը հանդիսացավ հասունացող հեղափոխության միակ կազմակերպիչն ու ղեկավարը վոչ միայն Ռուսաստանում, այլև Արևմուտքում:

Անդրկովկասում ընկեր ՍՏԱԼԻՆՆ եր 1905 թվականի մայիսմեկյան յելույթների կազմակերպիչը, յելույթներ, վորոնց ակտիվ մասնակցում եյին նաև գյուղացիական մասսաները (82 հազար գյուղացի Վրաստանում): Ընկեր ՍՏԱԼԻՆԸ ղեկավարում ե Կովկասյան Միության կոմիտեն, վորը հըսկայական դեր խաղաց բոլշևիկյան կենտրոնի ստեղծման գործում:

1905 թվականի հեղափոխությունը Ռուսաստանում ուժգին խթանում ե հեղափոխական շարժման զարգացումը այլ յերկրներում և վորոշում ե արևմտա-յեվրոպա-



կան պրոլետարիատի 1905-1906 թ. թ. մայիսմեկյան յելույթների մարտական բնույթը:

Ռեակցիայի տարիներին, չնայած տեռորի կատաղի խրախճանքին, Ռուսաստանում տեղի եյին ունենում մայիսմեկյան գործադուլներ ու ցույցեր: Պետերբուրգում, 1907 թվականին, գործադուլ ե անում մոտ հարյուր հազար բանվոր և չի աշխատում 236 ֆաբրիկա ու գործարան:

Մոսկվայում տեղի յե ունենում համարյա ընդհանուր գործադուլ:

Բանվորական շարժման նոր վերելքը 1911-1912 թվականներին անդրադարձավ նաև մայիսմեկյան յելույթների վրա:

1912 թվականի մայիսմեկյան ցույցերի նախապատրաստումն ու կազմակերպումը ղեկավարում եր ընկեր ՍՏԱԼԻՆԸ, վորը շըրջում եր Ռուսաստանի կարևորագույն շըրջանները մայիսի 1-ի նախորյակին, վորպես Կենտկոմի անդամ: 1912 թվականի մայովկան պրոլետարիատի պատասխանն եր բանվորների գնդակահարմանը Լենայի վոսկեհանքերում:

Բոլշևիկյան «Զվեզդա» թերթն իր ոգոստոսի 21-ի (8-ի) համարի առաջին եջում,

ագո շրջանակի մեջ զետեղեց հետևյալ հաղորդագրությունը՝

**„Լենայի վոսկեհանքերում սպանվեց 270, վիրավորվեց 250“**

Ընկեր ՍՏԱԼԻՆԸ «Զվեզդա» թերթի ապրիլի 28-ի (15-ի) համարում զետեղած իր «Նոր շրջան» հոդվածում գրել էր՝

«Պիտերում և Մոսկվայում, Ռիգայում և Կիևում, Սարատովում և Եկատերինոսլավում, Օդեսայում և Խարկովում, Բագվում և Նիկոլայևում,—ամենուրեք, Ռուսաստանի բոլոր ծայրերում, գլուխ են բարձրացնում բանվորները՝ ի պաշտպանություն Լենայում զոհված իրենց ընկերների:

«Մենք կենդանի ենք, եռում է մեր ալ արյունը՝ չմսխված ուժերի կրակով»:

1913 թվականին Ռուսաստանում գործադուլ էր արել ավելի քան 800 հազար բանվոր:

ԼԵՆԻՆԸ գրել էր՝

«Ընթացիկ տարվա մայիսյան ամբողջ աշխարհին ցույց տվեց, վոր Ռուսական



պրոլետարիատը հաստատապես առաջ է գնում իր հեղափոխական ճանապարհով, առանց վորի փրկություն չկա խեղդվող և կենդանի նեխվող Ռուսաստանի համար»:

1914–1918 թվականների իմպերիալիստական պատերազմը, առանձնապես ակնառու կերպով պարզեց Երկրորդ Ինտերնացիոնալի դավաճանական, հակահեղափոխական էությունը: Երկրորդ Ինտերնացիոնալի առաջնորդները բացե ի բաց անցան բուրժուազիայի կողմը: Նրանք վերացրին մայիսի 1-ի տոնակատարումը, վորոշում կայացնելով, թե նկատի ունենալով պատերազմը՝ «մայիսի 1-ին վոչ մի ելույթ չպետք է տեղի ունենա»: Նրանք իրենց դրոշը դարձրին պատերազմող պետությունների իմպերիալիստական դրոշակներ:

Միայն Լենինի ղեկավարած բոլշևիզմն էր, վոր համաշխարհային պատերազմի տարիներին ևս մնում էր մասսաների հետ և նրանց գլուխն անցած, հաստատապես առաջ տանելով նրանց հեղափոխական ճանապարհով՝ չնայած բոլոր դժվարություններին: Ռուսաստանում իմպերիալիստական պատերազմի տարիներին, պրոլետարական

Մայովկաները տեղի էյին ունենում բոլշե-
վիկյան լոզունգներով՝ «Պատերազմ-պա-
տերազմին», «Վերածենք իմպերիալիստա-
կան պատերազմը քաղաքացիական պատե-
րազմի»:

Մյուս երկրների հեղափոխականներն
ընդունեցին բոլշեվիկյան լոզունգները և,
չնայած ոստիկանական արգելման,
Բեռլինի բանվորները 1916 թվականի մայի-
սի 1-ի օրը, հանդես են գալիս ցույցով ընդ-
դեմ պատերազմի, ընդդեմ իմպերիալիզմի:

Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը,
որը դրեց համաշխարհային պրոլետարա-
կան հեղափոխության սկիզբը, մեծ բարձ-
րության հասցրեց միջազգային պրոլետա-
րական համերաշխության հեղափոխական
գաղափարը: Միջազգային պրոլետարիատի
հեղափոխական դրոշն է դառնում Հոկտեմ-
բերյան մեծ հեղափոխության և Կոմու-
նիստական Ինտերնացիոնալի դրոշը:

Հոկտեմբերյան մեծ հեղափոխությու-
նը նոր էջ բացեց համաշխարհային պատ-
մության մեջ:

1918 թվականի մայիսի 1-ը Ռուսաստանի
պրոլետարիատն առաջին անգամ տոնում
էր, որպես տիրապետող դասակարգ:



Հայաստանում առաջին անգամ մայիսմեկ
յան տոնակատարությունը տոնվեց 1899 թ.
Երևանում: Այդ տոնակատարությունը
կազմակերպեցին Երևանի Թեմական դպրո
ցի և արական գիմնազիայի բարձր խմբերի
աշակերտությունը միացած Երևանի Շուս
տովի («Արարատ»-ի) զավոդի և մի խումբ
այլ բանվորների հետ:

Մայիսի 1-ին, համաձայն նախապես կն-
քված պայմանի, տոնի մասնակցողները մի-
ցան իրար հետ Կոնդի ձորում: 1899 թ. մա
յիսի 1-ին Ջանգվի ձորում տոնվեց
մայիսի մեկը. որվա առթիվ տեղի ու-
նեցավ զրույց և հավաքվածներին բացատր
վեց մայիսմեկյան նշանակությունը, վո-
րից հետո ոստիկանության հսկողությու-
նից խուսափելու համար մասնակիցները
ցրվեցին խաղաղ կերպով իրենց տեղերը:

Ավելի կազմակերպված և ավելի հաջող
նախապատրաստվեց 1904 թ. մայիսմեկ-
յան տոնակատարությունը Լենինականում
(Ալեքսանդրապոլում): Մինչ այդ Ռ. Ս.
Դ. Բ. Կ. Կովկասյան միությունն ընկ.
ՍՏԱԼԻՆԻ ղեկավարությամբ ռուսերեն, վրա
ցերեն և հայերեն լեզուներով հրատարակել
էր բրոշյուրներ ու թռուցիկներ, վորոնք

բացատրում եյին մայիսմեկյան տոնի նշանակությունը և այն մարտականորեն կազմակերպելու անհրաժեշտությունը: Դեռ ապրիլին տեղական սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունը ծրագրում ե տալ մայիսմեկյան տոնին մարտական բնույթ: Այդ պատճառով ծրագրվում ե կազմակերպել տնային, ճաշարանների, հյուրանոցների ծառայող-բանվորների գործադուլ, վորի համար և ընտրվում ե 11 հոգուց բաղկացած գործադուլային բյուրո, վորը խազեյիններին ներկայացնելու համար մշակում ե հետևյալ պահանջները, սահմանափակել աշխատանքի ժամերը, ավելացնել ռոճիկները, հաստատել գիշերային հերթափոխություն, հատկացնել բնակարան, ձրի բժշկական ոգնություն և այլն: Չնայած պահանջների այս համեստությանը, տնատերերն այն մերժում են: Գործադուլային կոմիտեն վորոշում ե հայտարարել գործադուլ: Ապրիլի 30-ը հայտարարվում ե գործադուլի օր: Ջիթողցյանների գարոլը, վորտեղ այժմ բարձրանում ե Լենինականի Տեքստիլ գործարանը, նշանակվեց գործադուլավորների հավաքի վայրը: Առավոտյան վաղ հավաքվեցին տնային, ճաշարան-



ների, հյուրանոցների, բանվորներն ու ծառայողները, վորոնց միացան նաև Ջիթողցյանների գործարանի բանվորները: Գործադուլի վայր յեկան նաև յերկաթուղայիններից և քաղաքացիներից մարդիկ, վորոնց թիվը հասավ մոտավորապես 1000—1200 հոգու: Իրարանցման մեջ ընկավ ամբողջ քաղաքը: Գործի կանչվեց վոստիկանությունը և նրա հավատարիմ դաշնակցական ողերքը—դաշնակցական տեղական կոմիտեյի անդամները: Յերբ բանվորները բաց արին միտինգը և դեռ չեր վերջացել առաջին ճառը, վրա հասան վոստիկանները և դաշնակցական խմբապետները: Սկսվեց ծեծ, տուր ու դմբոց, դագանակներ և այլն: Բանվորները տեղի տվին: Ցույցը վերջացավ, դաշնակցականները գովասանական գնահատական ստացան տեղական պրիստավից:

Հետագա մայիսմեկյան տոնակատարությունը տեղի յե ունենում Գորխում 1905 թ.

1906 թ. մայիսի 1-ը տոնվեց և՛ Յերևանում, և՛ Լենինականում: Ճիշտ ե շատ տարիներ յերևանցիք տոնել եյին մայիսի 1-ը, վորպես գարնանային առաջին օր, սակայն

այս տարվա տոնը սովորական որի նման չեր: Առաջին տարին եր, վոր մայիսի 1-ը Յերևանում տոնվում եր վորպես քաղաքական, վորպես միջազգային պրոլետարիատի մեծ տոն:

Դեռ ապրիլի 29-ին Ռ. Ս. Դ. Բ. Կ. տեղական կազմակերպությունը կարմիր թերթիկների վրա յերեք լեզուներով հրավեր կարդաց ընկեր-բանվորներին տոնել մայիսի 1-ը: Ապրիլի 30-ին նույն կազմակերպությունը բաց թողեց ելի մի թռուցիկ, վորի մեջ բացատրում եր այդ որվա նշանակությունը:

Ռ.Ս.Դ.Բ.Կ. կոչին արձագանքեցին Սարաջևի և Շուստովի կոնյակի գործարանի բանվորները (հայ, վրացի, ռուս). «Լույս» տպարանի բանվորները, կաշու գործարանների բանվորները (դաբաղները) և մի քանի ուրիշ մանր արհեստանոցների բանվորներ: Վաղ առավոտից քաղաքի զանազան մասերում կախվեցին կարմիր դրոշակներ մակագրված յերեք լեզուներով, սակայն դեռ մի քանի որ առաջ լուր եր տարածված, թե մայիսի 1-ին ցույց պիտի լինի. այդ պատճառով քաղաքի զանազան մասե-



րում զորք եր կենտրոնացված, և զորքերի կուտակման պատճառով ցույց կամ միտինգ տեղի չունեցավ:

Ավելի ծանր պայմաններումն եր գտնըվում Լենինականը (Ալեքսանդրապոլը), դեռ տոնից մի շաբաթ առաջ ավելի յեր խստացվել զինվորական դրությունը. քաղաքի փողոցներում վխտում եյին հետևակ և հեծյալ զորամասեր-դրագուններ: Սակայն տոնակատարության կազմակերպությունը տեղի ունեցավ աշակերտության միջոցով. Մայիսի մեկին յերկուշաբթի որը տեղական դպրոցների բոլոր աշակերտները չգնացին դասի և խնդրեցին ուսուցիչներին, վոր միասին դուրս գան դաշտ մայիսի մեկը տոնելու համար: Ուսուցիչներից վոմանք ընդառաջեցին աշակերտների խնդիրքին և խմբով գնացին քաղաքից դուրս. յերկար չտևեց այդ տոնակատարությունը՝ շուտով վրա հասան ստրաժնիկները, վորոնք գավառապետի կողմից առաջարկեցին անմիջապես ցրվել և վերադառնալ իրենց տները, հակառակ դեպքում, վորպես զինվորական դրության խախտողներ և վորպես ցուցարարներ կբանտարկվեն և կաքսորվեն:

Այդ կապակցությամբ ել արգելվեցին

ամբողջ քաղաքում նույնիսկ 4—5 հոգուց բաղկացած խմբավորումները:

Ավելի կազմակերպված յեղավ 1907 թվի մայիսմեկյան տոնը, որը նույնպես կազմակերպվեց Լենինականում: Գործակատարների միության նախաձեռնությամբ ապրիլի 2-րդ կեսին գումարվեց աչքի ընկնող արհեստանոցների, գործարանների, տպարանների բանվորների ու ծառայողների ժողով, որը պիտի մշակեր մայիսի 1-ի տոնակատարության ծրագիրը: Կազմակերպչական այդ ժողովը որոշեց տոնել մայիսի 1-ը և աշխատանքի դուրս չգալ: Հակառակ ժողովի գաղտնի բնույթին, ոստիկանությունն իմացավ բանվորության որոշումը և ձեռք առավ տոնը խանգարելու կտրուկ միջոցառումներ:

Ապրիլի 27-ին պատերին փակցվեց գավառապետի հրամանը, որով խստիվ արգելվում էր տոնակատարությունը և սպառնում էր աքսորով նրանց, ովքեր կբացակայեյին աշխատանքից:

Դրությունը ավելի սրվեց յերբ գավառապետն առաջարկեց բոլոր գործարանատերերին ու արհեստանոցի տերերին ներկայացնելու կառավարությանը մայիսի 1-ին



աշխատանքի չեկող բոլոր բանվորների ու գործակատարների ցուցակները: Ապրիլի 27-ին տեղի ունեցավ կազմակերպչական 2-րդ արտակարգ ժողովը: Ժողովում գործակատարներն առաջարկեցին հրաժարվել տոնից, իսկ բանվորները ընդհակառակը պնդում եյին տոնակատարության անհրաժեշտության վրա: Մայիսի 1-ին վաղ առավոտից քաղաքի զանազան փողոցներում ու արհեստանոցների մոտերքում դրված եյին բանվոր հսկիչներ, որոնք պիտի հսկեյին տոնակատարության ընթացքի վրա: Որոշված տեղում (Ջիթողցոնց գաբրում) հավաքվեցին մեծ թվով բանվորներ, կարմիր նշաններով և նույնիսկ կարմիր բլուզներով: Հավաքվածների մեջ տարածվեց Ռ.Ս.Դ.Բ.Կ. կուսակցության հրատարակած թռուցիկները: Որվա լոզունգը վերաբերում է 8 ժամվա բանվորական որվան: Ժամի 11-ին բացվեց միտինգը: Առաջինը հանդես յեկավ Ռ.Ս.Դ.Բ.Կ.-ի ներկայացուցիչը, որը խոսեց մայիսի 1-ի համաշխարհային բանվորական օր լինելու նշանակության, Ռուսաստանի հեղափոխության և բանվոր դասակարգի անխուսափելի հաղթությունների մասին: Ճառա-

խոսների ասածներն ընդհատվում էյին բուռն ծափահարություններով և ուռաներով —ծածանում էր նաև՝ կարմիր դրոշակը: Մարսելյոզ յերգելով փակվեց միտինգը: Վոստիկանությունը չհաջողվեց հայտնաբերել միտինգի տեղը ու ցրել ցույցը, սակայն նրա ձեռքն ընկած աշխատանքից բացակայողների ցուցակներով սկսվեցին խուզարկություններ ու բանտարկություններ:

1917 թ. փետրվարյան հեղափոխությունից հետո Հայաստանի զանազան վայրերում՝ Յերևանում, Լենինականում, Կիրովականում տեղի ունեցան նույնպես մայիսմեկյան տոնակատարություններ: 1918 թ. մայիսյան տոնակատարություններ վոչ մի տեղում տեղի չունեցան, իսկ 1919 թվին թույլ կերպով տոնվեց Լենինականում և Յերևանում:

1920 թ. մայիսմեկյան ցույցերը վերածվեցին զինված կոմունիստական ապստամբությունների Հայաստանի մի շարք քաղաքներում և շրջաններում (Լենինական, Ղարս, Սարիղամիշ, Ն. Բայազետ և այլն):

Խորհրդային յերկրում մայիսի 1-ը տոնվում է բանվորական մասսաների և բոլոր



աշխատավորների մոբիլիզացիայի նշանաբանի տակ հանուն բանվոր դասակարգի դիկտատուրայի հետագա ամրացման, սոցիալիստական շինարարության նոր հաղթանակների:

Այս տարի մեր յերկրի աշխատավոր մասսաները մայիսի 1-ը դիմավորում են սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի պայմաններում, Ստալինյան Սահմանադրության կիրառման առաջին տարում:

Սոցիալիզմի հաղթանակը մեր յերկրում ապահովեց աշխարհիս միակ պրոլետարական դիկտատուրայի տնտեսական ու քաղաքական ամրացումը, բարձրացրեց Խորհրդային Միության հզորությունն ու միջազգային նշանակությունը հանուն ժողովուրդների խաղաղության՝ նոր իմպերիալիստական պատերազմների վտանգի աճման և Խորհրդային Միության դեմ հակահեղափոխական պատերազմի նախապատրաստման պայմաններում:

Խորհրդային Միությունը— միջազգային պրոլետարիատի աշխարհիս միակ հայրենիքը—իր պայքարում հանուն ժողովուրդների խաղաղության հենվում է կապիտա-

 

լիստական յերկրների լայն աշխատավորական մասսաների սրտաբուղխ համակրանքի և պաշտպանության վրա։

Մայիսի 1-ի որը կապիտալի յերկրների պրոլետարիատն ու աշխատավորությունը դասակարգային պայքարի հետագա սրման պայմաններում, ժողովրդական մասսաների աննկարագրելի աղքատացման, առանձին յերկրներում բուրժուական դեմոկրատիայի վերջին մնացորդների վրա հարձակվելու և ֆաշիստական տեռորի խրախճանքի պայմաններում կցուցադրեն իրենց պատրաստակամությունը միասնական ճակատի հիման վրա պայքարելու արյունոտ ֆաշիզմի դեմ, նոր իմպերիալիստական պատերազմի դեմ, կպայքարեն կոմունիզմի դրոշի տակ հանուն միջազգային պրոլետարական հեղափոխության, հանուն կոմունիզմի ամբողջ աշխարհում։



ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

# ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԽՈՍՔԵՐԻ ՈՒ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

*ԲԱՑԱՐՁԱԿ ՄԵԾԱՄԱՍՆՈՒԹՅՈՒՆ*։ Բացարձակ՝ նշանակում է անպայման, անկախ համեմատությունից դուրս գտնվող՝ հակառակ հարաբերականին, վորը միշտ վորոշվում է վորևէ բանի նկատմամբ, համեմատելով վորևէ բանի հետ։ Բացարձակ մեծամասնություն արտահայտությունը գործածվում է ընտրությունների ժամանակ։ Ձայների բացարձակ մեծամասնություն ստացած է համարվում այն թեկնածուն, վորն ավելի շատ ձայն է ստացել, քան մյուս բոլոր թեկնածուները միասին վերցրած կամ, այլ խոսքով, նա, ով ստացել է

տրված բոլոր ձայների կեսից ավելին (օրինակ՝ յեթե 300 ձայնից մի թեկնածվին տրվել է 20 ձայն, մյուսին՝ 30, յերրորդին՝ 45, չորրորդին 50, իսկ հինգերորդին՝ 155 ձայն, ապա անցնում է վերջինը, վորպես ձայների բացարձակ մեծամասնություն ստացած թեկնածու):

Սակայն մեծ մասամբ ընտրված լինելու համար պահանջվում է վոչ թե բացարձակ, այլ հարաբերական (կամ հասարակ) մեծամասնություն: Այդ նշանակում է, վոր ընտրված է համարվում նա, ով ավելի շատ ձայն է ստացել, քան վորևե այլ թեկնածու առանձին վերցրած (օրինակ՝ յեթե հինգ թեկնածուներից առաջինն ստացել է 100 ձայն, յերկրորդը՝ 150, յերրորդը՝ 170, չորրորդը՝ 180, իսկ հինգերորդն ստացել է 190 կամ նույնիսկ 181 ձայն, ապա ընտրված է համարվում հինգերորդ թեկնածուն):

Պարլամենտի անդամ ընտրելիս, մի քանի յերկրներում, օրինակ՝ Անգլիայում, պահանջվում է հարաբերական մեծամասնություն, այլ յերկրներում, օրինակ՝ Ֆրանսիայում, պահանջվում է բացարձակ մեծամասնություն: Թե այնտեղ և թե այստեղ,



ընտրությունները կատարվում են ըստ ընտրական շրջանների, ընդվորում յուրաքանչյուր շրջանից կարող է ընտրվել միմիայն մի պատգամավոր: Անգլիայում ամբողջ յերկիրը բաժանված է 615 ընտրական շրջանի, յուրաքանչյուր շրջանից ընտրվում է մի պատգամավոր և ընտրված է համարվում նա, ով տվյալ շրջանում ստանում է ձայների հասարակ մեծամասնությունը: Դրա շնորհիվ, օրինակ, 1935 թ. նոյեմբերի պարլամենտական ընտրությունների ժամանակ, պահպանողականները (իրենց դաշնակիցների հետ միասին), վորոնց տրվել եր բոլոր ձայների կեսից միայն մի քիչ ավելի (11,5 միլիոն 21,5 միլիոն ձայնից), ստացան բոլոր մանդատների (պատգամավորական տեղերի) համարյա 70 տոկոսը: Ֆրանսիայում, ընտրված լինելու համար, պահանջվում է ստանալ տվյալ շրջանում տրված ձայների բացարձակ մեծամասնությունը: Բայց վորովհետև հաճախ պատահում է, վոր վոչ մի թեկնածու բացարձակ մեծամասնություն (կեսից ավելին) չի ստանում, ապա Ֆրանսիայում նշանակվում է ընտրությունների այսպես կոչված յերկրորդ շրջանը, այլ խոսքով՝ նոր քվեարկու-

թյուն, յերբ հարցը լուծվում է արդեն ձայների հասարակ մեծամասնությամբ:

ԲՈՒԼԱՏԻՐՈՎԿԱ– ՔՎԵԱՐԿՈՒՄ– ճշտիվ նշանակում է քվե նետել, ձայն տալ գնդակ գցելով քվեատուփի աջ կամ ձախ բաժանմունքի մեջ, կամ զանազան գույնի գնդակներ գցելով (սև կամ սպիտակ) միևնույն քվեատուփի մեջ: Ավելի լայն իմաստով բուլլատիրովկա նշանակում է ընդհանրապես ձայն տալ կամ ընտրել: Բուլլատիրովկայի յենթարկվել–քվեարկվել— նշանակում է հանդես գալ ընտրությունների, վորպես թեկնածու:

ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱՑՈՒՄ—բոլշևիկյան կուսակցության կազմակերպական կառուցման հիմնական սկզբունքը: Այդ սկզբունքն այն է, վոր դեմոկրատիզմը՝ ընտրականությունը, հաշվետվության յենթակա լինելը, բոլոր ղեկավար կուսակցական օրգանների փոփոխելի լինելը վերևից մինչև ներքև, կուսակցության բոլոր անդամների ակտիվ մասնակցությունը կուսակցության կյանքին, նրա աշխատանքին,– համակցվում է կենտրոնացման հետ, յերբ կուսակցության ամբողջ աշխատանքը ղեկավարվում է մի կենտրոնից, պահպանվում է



կուսակցական ամենախիստ կարգապահություն և բոլոր ստորադաս կազմակերպությունների ու կուսակցության առանձին անդամները պարտադիր կարգով կատարում են վերադաս օրգանների վորոշումները:

Կուսակցության 17-րդ համագումարում ընդունված ՀԱՄԿ(բ)Կ-ի կանոնադրության 18-րդ կետում ասված է՝

«Կուսակցության կազմակերպական կառուցվածքի ղեկավար սկզբունքը դեմոկրատական կենտրոնացումն է, վորը նշանակում է՝

ա) վերից վար՝ կուսակցության բոլոր ղեկավար օրգանների ընտրականությունը.

բ) կուսակցական օրգանների պարբերական հաշվետվությունն իրենց կուսակցական կազմակերպությունների առաջ.

գ) կուսակցական խիստ կարգապահություն և փոքրամասնության յենթարկվելը մեծամասնության.

դ) բարձրադասի օրգանների վորոշումների անպայման պարտադիր լինելը ստորին օրգանների և կուսակցության բոլոր անդամների համար»:

Դեմոկրատական կենտրոնացման սկզբունքը, վորն առաջին անգամ առաջադրել եր

Լենինը, կազմում էր բոլշևիկյան կուսակցության կառուցվածքի հիմքը՝ նրա գոյության առաջին իսկ օրից: Այդ սկզբունքը, վորը հետագայում զարգացրին Լենինը և Ստալինը, այժմ կազմում է վոչ միայն ՀԱՄԿ(բ)Կ-ի, այլև Կոմունիստական Ինտերնացիոնալի մյուս բոլոր սեկցիաների կազմակերպչական կառուցվածքի հիմքը: Ինչպես հայտնի յե, հատկապես դեմոկրատական կենտրոնացման սկզբունքն էր, վոր հենց սկզբից կատաղի դիմադրության և հանդիպել մենշևիկների ու տրոցկիստների կողմից և բոլշևիկների ու մենշևիկների պառակտման հիմք է ծառայել, վորովհետև վերջիններս տրոցկիստների հետ միասին ժխտում եյին կենտրոնացված ղեկավարության և կուսակցական ամուր կարգապահության անհրաժեշտությունը: Այդ ժխտումը մենշևիկներին ու տրոցկիստներին աստիճանաբար բերեց պրոլետարական հեղափոխության վոխերիմ թշնամիների բանակը, ֆաշիզմի բանակը:

Դեմոկրատական կենտրոնացման սկզբունքն ապահովեց մի կողմից պրոլետարական դեմոկրատիայի ռեժիմը բոլշևիկյան կուսակցության մեջ, իսկ մյուս կողմից՝ յեր-



կաթյա կարգապահությունը նրա շարքերում, նրա բարձր մարտունակությունը և իրենց դժվարությամբ բացառիկ խնդիրները լուծելու ընդունակությունը: Այդ սկզբունքի մոռացվելը մի քանի կուսկազմակերպությունների կողմից, դեմոկրատական կենտրոնացման հիմքերի խախտումը, ինչպես մատնանշում է ՀԱՄԿ(բ)Կ-ի Կենտկոմի պլենումը, «...վնաս են հասցնում կուսակցությանը, վորովհետև նրանք արգելակում են կուսակցության անդամների ակտիվության աճումը, մեր կուսակցության կյանքում քաղաքական հատուկ նշանակություն ունեցող ակտիվին զրկում են ղեկավար աշխատանքին մասնակցելու հնարավորությունից, կուսակցության անդամներին զրկում են կուսօրգանների գործունեյությունը վերահսկելու օրինական իրավունքներից և դրանով իսկ խախտում են ղեկավարների ու կուսակցական մասսաների ճիշտ փոխհարաբերությունները»:

Ներկուսակցական կյանքում դեմոկրատական կենտրոնացման սկզբունքի նշանակությունն առանձնապես մեծանում է այժմ, Նոր Սահմանադրության մտցվելով, վորը մի շրջադարձ է նշանակում մեր յերկրի

 

քաղաքական կյանքում: Որպեսզի կուսակցությունը կարողանա գլխավորել այդ շարժումը, գլխավորել նոր, մինչև վերջը դեմոկրատական ընտրությունները, «...անհրաժեշտ է, որ կուսակցությունն ինքն անցկացնի հետևողական դեմոկրատական պրակտիկա, որ նա ներկուսակցական կյանքում մինչև վերջն անցկացնի դեմոկրատիկ կենտրոնացման հիմունքները, ինչպես այդ պահանջում է կուսակցության կանոնադրությունը, որ նա ինքն ունենա այն անհրաժեշտ պայմանները, որոնց շնորհիվ կուսակցության բոլոր օրգաններն ընտրական լինեն, որ քննադատությունը և ինքնաքննադատությունը զարգանա լիակատար չափով, որ կուսակցական մասսայի առջև կուսակցական օրգանների պատասխանատվությունը լիակատար լինի և ինքը՝ կուսակցական մասսան լիովին ակտիվացվի» (ընկեր Ժդանովի զեկուցման առթիվ ՀԱՄԿ(բ)Կ Կենտկոմի պլենումի ընդունած բանաձևից):

**ԸՆՏՐԱԿԱՆ ՇՐՋԱՆ**— տերիտորիալ այն միավորը, որոնց բաժանվում է երկիրը՝ իր ներկայացուցչական հիմնարկների (պարլամենտ) ընտրությունները կատարելու նը-



պատակով: Բաժանումը կատարվում է սովորաբար ազգաբնակչության թվին համապատասխան, այնպես, որ բոլոր շրջաններում բնակիչների թիվը մոտավորապես նույնը լինի: Սակայն պետք է նկատի ունենալ, որ բուրժուական երկրներում շրջանների սահմանների վերանայումը սակավ դեպքումն է կատարվում և դրանք վերանայելու ամեն մի փորձ դառնում է համառ ու տևական քաղաքական պայքարի առարկա (ինչպես շահագործող դասակարգերի առանձին խմբավորումների միջև, այնպես էլ շահագործող դասակարգերի և աշխատավոր բնակչության միջև): Քանի դեռ շարունակվում է այդ պայքարը, մի քանի շրջանների բնակչությունը զգալիորեն ավելանում է, մյուսներինը՝ զգալիորեն կրճատվում է և, չնայած դրան, թե առաջինները և թե մյուսները առաջվա նման հավասար թվով պատգամավորներ են ուղարկում պարլամենտ: Այդ հանգամանքն օգտագործում են տիրապետող դասակարգերը, որոնք ավելի սակավաբնակ և ամենից ավելի հետամնաց շրջաններում հեշտությամբ անց են կացնում իրենց ներկայացուցիչներին, մեծ մասամբ ամենառեակցիոն

կալվածատերերին, ձեռնարկատերերին, տերտերներին և այլն՝ ի վնաս աշխատավոր մասսաների շահերի:

ՔՎՈՐՈՒՄ— լատիներեն բառ է, վոր նշանակում է տվյալ կազմակերպության (կուսակցության, տեղական ինքնավարության օրգանի, պարլամենտի և այլն) անդամների այն նվազագույն (մինիմալ) թիվը, վորին այդ կազմակերպության կանոնադրությամբ անհրաժեշտ է այս կամ այն ժողովում, վորպեսզի տվյալ ժողովն իրավունք ունենա վորոշում ընդունելու: Հաճախ, առանձնապես կարևոր հարցեր լուծելու համար սահմանվում է հատուկ քվորում՝ կազմակերպության անդամների ժողովում պարտադիր կարգով ներկա գտնվելիք անդամների ավելի բարձր մինիմում (նվազագույն թիվ):

ԿՈՈՊՏԱՑԻԱ—ինքնալրացում: Այդպես է կոչվում ընտրական օրգանի մեջ նոր անդամների մտցնելը (լրացուցիչ կերպով կամ դուրս յեկածների փոխարեն) հենց այդ օրգանի հայեցողությամբ, առանց նախնական համաձայնության կամ նույնիսկ ընտրողների այն կոլեկտիվի գիտության, վորի կողմից ընտրվել է նա: Վերջին ժամա-



նակներս, ինչպես սահմանեց ՀԱՄԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը, «լայն չափով տարածվել է զանազան ղեկավար աշխատողներին, վորպես շրջկոմների, քաղկոմների, յերկրկոմների, մարզկոմների, ազգային կոմկուսների կենտկոմների պլենումների անդամներ կոոպտացիայի յենթարկելու գործում չարդարացվող պրակտիկան»: ՀԱՄԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը վճռաբար դատապարտեց այդ վնասակար պրակտիկան, վորը «մեր կուսակցության կանոնադրության ամենալուրջ խախտումն է հանդիսանում», «խախտում է կուսակցության անդամների օրինական իրավունքը՝ մասնակցելու իր ղեկավար օրգանների ընտրություններին» (ընկեր Ժդանովի զեկուցումից): Ինչպես ցույց են տալիս փաստերը, կոոպտացիան լայնորեն կիրառվել է նաև խորհուրդներում, պրոֆմիություններում և այլն, մի բան, վոր հանդիսանում է խորհրդային և պրոֆմիութենական դեմոկրատիայի սկզբունքների ամենակոպիտ խախտումը: Այժմ, Նոր Սահմանադրության մտցնելով, վորը նշանակում է «շրջադարձ յերկրի քաղաքական կյանքում», վորը թելադրում է «ուժեղացնել մասսաների վե-

բանակցությունը խորհրդային օրգանները նկատմամբ և ուժեղացնել խորհրդային օրգանների պատասխանատվությունը՝ մասսաների նկատմամբ»։ Կոոպերացիայի պրակտիկային պետք է վերջ տրվի:

ԳԱՂՏՆԻ ՔՎԵԱՐԿՈՒԹՅՈՒՆ (կամ փակ քվեարկություն)— քվեարկություն՝ ընտրությունների ժամանակ տոմսեր կամ բյուլետեններ տալով կնքած ծրարներում, գընդակներ գցելով և այլն: Սովորաբար գաղտնի քվեարկությունը կատարվում է հետևյալ կերպ՝ յուրաքանչյուր ընտրական շրջանում կազմակերպվում են մի քանի կետեր, ձայն տալու համար: Յուրաքանչյուր կետում սարքվում է մի քանի մեկուսացված խցիկ: Ընտրողը մտնում է այդպիսի խցիկներից մեկի մեջ, ծածկում է իր հետևից դուռը կամ իջեցնում է վարագույրը և այդպիսով ապահովելով իր քվեարկման լիակատար գաղտնիքը, իր բլանկ-քարտի վրա (այդպիսի բլանկ-քարտեր նախապես ուղարկվում են բոլոր ընտրողներին) գրում է տվյալ ընտրությունների քվեարկվող թեկնածուներից մեկի անունը, որին նա մտադիր է քվե տալ: Ավելի հաճախ լինում է այնպես, որ քար-



տի վրա արդեն տպված են լինում բոլոր թեկնածուների ազգանունները, կամ բոլոր ցուցակների համարները: Ընտրողին մնում է միայն ընդգծել իր ցանկացածը: Այնուհետև նա քարտը դնում է հատուկ ծրարի մեջ (դրանք ևս սովորաբար նախապես ուղարկվում են ընտրողներին) և ծրարը գցում է քվեատուփի մեջ նրա ճեղքից: Քվեատուփը դրված է յուրաքանչյուր խցիկում և նման է փոստարկղին:

Քվեատուփի մեջ գցված քարտերը հաշվելիս (քարտերը ավելի հաճախ կոչվում են ընտրական բյուլետեններ) վերահսկողություն է կատարում հատուկ հանձնաժողովը:

ՔՎԵԱՏՈՒՓ— լատիներեն՝ ուռնա, որ նշանակում է վազա— անոթ: Քվեատուփերը օգտագործում են փակ, գաղտնի քվեարկություն անցկացնելիս: Այդ քվեատուփերի մեջ են գցում ընտրական գնդակները (սպիտակ կամ սև) կամ ընտրական քարտերը, բյուլետենները:

Շարունակվում է 1937 թ.
բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի
և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային
բյուրոներին և փոստի բաժանմունքներին.